ՎԱՀԱԳՆ ԴԱՎԹՅԱՆ

# ԼԵՌԱՆ ԳԱԳԱԹԻՑ

Արևն առաջին իր շողն է վառում
Լեռան գագաթին,
Եվ միայն հպարտ արծիվն է թառում
Լեռան գագաթին:

Լեռան գագաթից
Հորիզոնն այնպե՜ս բաց է ու հստակ,
Լեռան գագաթից
Աշխարհն է փռվում քո հայացքի տակ:

Արթնացի՛ր կանուխ
Ու բռնիր ճամփան, որ սար է տանում,
Բարձրացի՛ր վերև՝
Ճակատդ տված լեռնային քամուն:

Ժայռերի տակից
Քեզ պաղ աղբյուրներ կգան ընդառաջ,
Նստի՛ր նրանց մոտ,
Խմի՛ր պաղ ջրից ու քայլի՛ր առաջ:

Ելի՛ր, բարձրացի՛ր,
Թող ցածում մնան ճամփաները ձիգ,
Լեռան գագաթից
Հայրենի հողը շա՜տ է գեղեցիկ...



# ԼԵՌԱՆ ԱՂԲՅՈՒՐԸ

Երբ լույսն է վառվում սեղանիս վրա,
Ինձ թվում է միշտ, թե մի ջինջ աղբյուր
Հեռու լեռներից
Ուրախ կարկաչում,
Քարեքար թռչում,
Գալիս է ինձ հյուր...
Հեռու լեռներում, մամռոտ քարի տակ,
Երգում է ահա աղբյուրը հստակ:
Երգում է ուրախ, ծիծաղում, ծափում,
Ծաղիկների հետ ծիածան կապում
Եվ կարծես հոգնած ծիծաղ ու ծափից՝
Ներքև է թռչում մամռոտ քարափից:
Ներքև է թռչում
Եվ տեսնում է՝ ի՞նչ...
Մի ուրիշ աղբյուր
Կարկաչուն ու ջինջ...
Փարվում է նրան, լավ խոսքեր ասում
Ու նրան գրկած՝ ներքև է վազում:
Վազու՜մ է, վազու՜մ
Քարերի միջով,
Անցնում իր ճամփան
Զրնգուն ճիչով,
Ներքև է թռչում

ՀՈԿՏԵՄԲԵՐ
№ 10 1964 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Եվ տեսնում է՝ ի՞նչ...
Ահա մի գետակ
Կարկաչուն ու ջինջ...
Եվ ուրախ ճիչով նրա գիրկն ընկած՝
Թռչում է նորից, վազում սրընթաց.
Վազում է տեսնում, որ խորունկ ձորում
Ահռելի ձայնով մի գետ է գոռում:
Գոռում, փրփրում,
Իրեն քրքրում,
Ափերին ծաղիկ
Ու ցող է փռում,
Ժայռերին զարկում
Հորձանք է տալիս
Ու աղաղակում.
— Գալի՜ս եմ, գալի՜ս...—
Աղբյուրը նրան
Ողջույն է տալիս,
Ասում.
— Բարեկա՛մ,
Ես է՜լ եմ գալիս:—
Եվ գետի զվարթ ալիքը դարձած՝
Աղբյուրն այն վճիտ ալանում է ցած,
Գետի հետ երգում,
Թռչում ձորն ի վար,
Մտնում է հանկարծ
Թունել մի խավար:
Հետո աղմուկով ու աղաղակով
Ցած նետվում հսկա մի խողովակով,
Մտնում է մի տուն,
Մեքենաներ է այնտեղ պտտում,
Ու, ա՜յ քեզ հրաշք,
Ջուրը սառնորակ
Լույս դառնում հանկարծ,
Դառնում է կրակ,
Լարի մեջ մտնում, հոսում լարերով,
Անցնում է նորից դաշտ ու սարերով
Ու գալիս մեր տուն...
Լամպի կոճակն եմ ահա պտտում.
Ու թվում է ինձ, թե մի ջինջ աղբյուր
Հեռու լեռներից
Ուրախ կարկաչում,
Քարեքար թռչում,
Գալիս է ինձ հյուր:



# Վիրավորանք

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

*Երվանդը դպրոց էր գնում ուրախ շվշվացնելով: Այդ օրը նրա ծննդյան տոնն էր, մայրիկը նրա համար նոր զգեստ ու փողկապ էր գնել, ինքը՝ Երվանդը լավ սովորել էր բոլոր դասերը և շատ էր ուզում, որ հանրահաշվի դասատու ընկեր Թորոսյանն իրեն դաս հարցնի: Նա «գերազանց» գնահատական կստանար ու կուրախացներ մայրիկին:*

*Առաջ պատահել էր, շատ էր պատահել, որ Երվանդն անկարգություն էր արել, դասն էր խանգարել կամ տանը բարկացրել էր մայրիկին, բայց այդ օրվանից նա որոշել էր դառնալ օրինակելի ու կարգապահ, դպրոցում միայն «4» ու «5» ստանալ, տանը օգնել մայրիկին, որ աշխատանքից վերադառնում էր հոգնած ու ճաշից հետո էլ ընտիպված զբաղվում էր տան անհամար հոգսերով: Երվանդը պարզ պատկերացնում էր իր «նոր» կյանքի սկիզբը: Ընկեր Թորոսյանը մատյանը կբացի, աթոռից վեր կկենա, կնայի դասարանին ու.*

*—Երվա՛նդ, արի գրատախտակի մոտ:*

*Երվանդը համարձակ կմոտենա գրատախտակին, կավիճը կվերցնի, արագ-արագ կգրի խնդիրն ու կլուծի, ընկեր Թորոսյանը կժպտա ու, ինչպես անցյալ տարի մի անգամ արդեն եղել է, կասի.*

*—Ուրեմն՝ դու կարող ես նաև «գերազանց» ստանալ, նստի՛ր:*

*Հետո, երեկոյան նա օրագրի «5»-ը ցույց կտա մայրիկին ու տեղնուտեղն էլ կհայտնի օրինակելի ու կարգապահ աշակերտ դառնալու իր որոշումը: Ա՜խ, միայն թե այդ օրն ընկեր Թորոսյանը նրան դաս հարցներ...*

*Նա դպրոց էր գնում ուրախ շվշվացնելով ու թափահարելով պայուսակը:*

*Խաչմերուկում կանգնեց, մինչև լուսաֆորի վրա կանաչ լույս վառվի, հետո բոլորի հետ փողոցն*

անցավ։ Մտքում պարծեցավ իր կարգապահությամբ։ Չէ, պարզ է, այսօրվանից Երվանդը փոխվում է, հանաք բան չի, արդեն լրացել է տասներեք տարին։

***

—Երվանդ, Երվա՜նդ, Ե՜ր...

Ետ նայեց։

Մայթով հևիհև վազում էր իրենց հարևան, երկրորդ դասարանցի Սիմոնը։ Երվանդը Սիմոնից չորս տարով մեծ էր, դրա համար էլ չէր սիրում նրա հետ գլուխ դնել, բայց Սիմոնն այնքան այլայլված էր, որ Երվանդն ակամա կանգ առավ ու հարցրեց.

— Ի՞նչ կա, Սիմոն։

— Երվանդ ջան, Գարիկը կորել է։

Գարիկը Սիմոնի կրտսեր եղբայրն էր։ Սիմոնի ծնողները աշխատում էին, Գարիկը ցերեկները մնում էր ինը տարեկան եղբոր խնամքին, իսկ դպրոց գնալիս Սիմոնը նրան տանում էր մորաքրոջ տուն։



— Ես գնացել էի հաց գնելու, Գարիկը տնից դուրս է եկել ու...

Սիմոնը հազիվ էր լացը զսպում.

— Երկու ժամ է փնտրում եմ...

— Իսկ միլիցիային հայտնե՞լ ես։

— Չէ։

— Ինչո՞ւ։

— Եսիմ, ես իսկի տեղն էլ չգիտեմ։

Մինչև դասերի սկսվելը ընդամենը կես ժամ էր մնում, եթե Սիմոնի հետ միլիցիայի բաժանմունք գնար, Երվանդը, իհարկե, կուշանար դասից։ Նա ուզում էր Սիմոնին ասել, որ ինքն շտապում է, որ որոշել է օրինակելի ու կարգապահ աշակերտ դառնալ, որ այսօր իր ծննդյան տոնն է և ինքն անպայման «5» պիտի ստանա՝ մայրիկին ուրախացնելու համար, բայց նայեց Սիմոնի վախեցած աչքերին ու ձեռքը թափ տվեց.

— Ինչ արած, գնանք, գնանք միլիցիայի բաժանմունք։

***

Միլիցիայի լեյտենանտը գլուխը բարձրացրեց ու հարցական նայեց տղաներին։

— Գարիկը կորել է,—լացակումած ասաց Սիմոնը։

— Ո՞ր Գարիկը։

— Սիմոնի եղբայրը,—վրա բերեց Երվանդը։

— Ո՞ր Սիմոնի, հուզվելու կարիք չկա, կարգին բացատրեցեք։

Մինչ Սիմոնը լաց էր լինում, Երվանդը պատմեց եղելությունը։ Լեյտենանտը մի քանի հարցեր տվեց Գարիկի մասին. քանի՞ տարեկան է, ի՞նչ գույնի մազեր ունի, ի՞նչ հագուստով է և այլն։ Հետո հանկարծ ժպտաց ու Սիմոնին ասաց.

— Մի՛ հուզվիր, տղաս, չի կորչի, կգտնենք։ Նստեցեք անկյունի նստարանին։

Երվանդն ու Սիմոնը նստեցին։ Լեյտենանտը զանգահարեց ինչ-որ տեղ, ինչ-որ կարգադրություններ արավ, հետո մեղավոր մարդու նման ասաց.

— Մի քիչ գլուխս խառն է, տղաներ, ներող եղեք։

Ու գլուխը կախեց սեղանի թղթերին։

Երվանդը նայում էր պատի ժամացույցին ու նրան թվում էր, թե սլաքն ուղղակի վազում է՝



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

բարակ գծիկներին բախելով։ Մեկից պակաս էր քանի րոպե, դասերն սկսվում էին ժամը մեկին։ Եթե հիմա Գարիկը գտնվեր, Երվանդը ժամանակին կհասներ դպրոց։ Ինչո՞ւ եմ այստեղ նստել, մտածում էր նա, Սիմոնը միայնակ էլ կարող է սպասել Գարիկին, չէ՞ որ լեյտենանտն ասաց, թե անհանգստանալու բան չկա։ Հիմա պետք է վեր կենալ ու վազել դպրոց, մի քանի րոպե հետո արդեն ուշ կլինի, ընկեր Թորոսյանը մեկն ու մեկին կկանչի գրատախտակի մոտ։ Նա ուզում էր տեղից ելնել, բայց կողքին նստած Սիմոնի կարմրած աչքերին նայելով՝ ամաչեց իր որոշումից։ Ա՜խ, այս անպիտան Գարիկն էլ ժամանակ գտավ կորչելու...

Մեկից տասը րոպե անց հեռախոսը զնգաց։ Լեյտենանտը փողը վերցրեց, լսեց, ժպտաց, ինչ-որ մեկին շնորհակալություն ասաց ու դարձավ դեպի տղաները.

— Որ ասում էի՜, Գտել են, հինգ րոպեից այստեղ կլինի։

Իսկապես շուտով դուռը բացվեց։ Նախ ներս մտավ Գարիկը՝ մի մեծ, կարմիր խնձոր ձեռքին, հետո մի կին միլիցիոներ, որ ժպտում էր ու հայացքով որոնում մեկին.

— Որտե՞ղ է Գարիկի հայրիկը։

Մինչ այդ Գարիկը նկատեց Սիմոնին ու հաղթական ասաց.

— Սիմոն, տե՛ս, խնձոր։

Երբ միլիցիայի բաժանմունքից դուրս եկան, արդեն մեկից անց էր քսան րոպե։ Երվանդը բաժանվեց Սիմոնից ու Գարիկից և վազեց դեպի դպրոց։ Գոնե դասի վերջին կհասնեմ, մտածում էր նա։ Արագ վազքի ժամանակ կպավ մի անուշադիր անցորդի, հաջորդ ուղեբաժանում էլ չնայեց լուսաֆորին, անցավ սլացող մեքենաների արանքով, ետևից լսեց արգելակված մեքենայի անիվի ձայնն ու պոստում կանգնած միլիցիոների սուլոցը...

Դասի ավարտին տասը րոպե էր մնացել։ Ընկեր Թորոսյանը զարմացած նայեց նրան ու գլուխը օրորեց.

— Նստի՛ր։

— Ես...

— Նստի՛ր։

Երվանդին դաս հարցնելու մասին խոսք էլ չէր կարող լինել, ուսուցիչն արդեն նոր դաս էր բացատրում։ Իսկ ջոկատի խորհրդի նախագահ Համլիկը զայրացած կիտել էր հոնքերն ու սեղանի տակ Երվանդին բռունցք էր ցույց տալիս։

Ահա բոլորը։

Դասամիջոցին, իհարկե, պարզվեց Երվանդի ուշանալու պատճառը, բայց այդ բանն ընկեր Թորոսյանը չիմացավ. նա արդեն դուրս էր եկել դասարանից, իսկ դրանից հետո ոչ ոք գլխի չընկավ այդ մասին ասել ուսուցչին։

Երվանդն այդ օրը կոտրված գնաց տուն, սովորելու տրամադրություն չուներ, երեկոյան էլ մայրիկին ցույց չտվեց օրագիրը, միևնույն է, այնտեղ գնահատական չկար...

# „ՁՄԵՌԸ ԹՄՐՈՂԸ ԳԱՐՆԱՆԸ ԳՈՐԾ ՉԻ ԱՆԻ“

ԲԵՆԻԿ ՍԵՅՐԱՆՅԱՆ

Նկ. ԷՄԻԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

*Մեր լեռնաստանում ձմեռը՝ ոնց որ խուլ ու համր: Փափուկ, մեծափաթիլ ձյունը կգա, կփակի դուռ ու ճամփա: Գյուղը կկորչի ձնե թանձր ծածկույթի տակ, ու հաճախ միայն երդիկներից ծըլգվող ծխի կապույտ երիզներով կորոշվի նրա տեղը:*

*Ձմռան այդ խուլ ու համր օրերին պապս ծալապատիկ կնստեր թախտին՝ իսկ և իսկ ցրտից կարմրած Ձմեռ պապի: Բրդե մի մալանչ ծնոտին, մյուսը՝ քթի տակ, երկու փոքրիկը՝ ճակատին: Ասես աչքի ոչ մի հետք:*

*Թախտը դրված կլիներ օդայի ծայրին ուղիղ դռան դիմաց:*

*Մեզ իր շուրջը հավաքած, պապս հեքիաթներ կպատմեր ու հի՜ն-հի՜ն զրույցներ՝ Պղնձե քաղաքից, Հազարան բլբուլից և Յապոնի կովից, որի ականատեսն ու մասնակիցն էր եղել ինքը:*

*Օդան երկար էր՝ միջակ գոմի մեծության: Պատուհան չուներ: Լույսն ընկնում էր երդիկից ու մեկ-մեկ էլ՝ դռնից, երբ բաց էր մնում դուռը:*

*Երդիկից ընկածը արծաթե կլոր վահան էր դաջում հողե հատակին, իսկ դուռը բացելու միջոցին արծաթե մի շողուն թուր էլ դրսից գալիս խաչվում էր այդ վահանին:*

*Ստացվում էին իրար խաչված թուր ու վահան:*

*Պապս պատմում էր, և թուրն ու վահանն անընդհատ շողշողում էին նրա հեքիաթներում ու պատմություններում:*

*Պապս շատ էր սիրում ասել.*

*— Էն է՝ թուրը վրա քաշեց ու...*

*Մենք սրտադող սպասում էինք տեսնենք՝ ո՞ր վիշապի, ո՞ր հրեշի գլուխն է թռցնելու այդ հըրեղէն զենքը:*

*Մեկ էլ, զրույցն ընդհատելով, պապս հանում էր իր բլրաձև փափախը, մի թավամազ ոչխարենի, որի նմանը գյուղում ուրիշ ոչ ոք չուներ:*

*Մենք՝ յոթ- ութ մանուկներ իսկույն վեր էինք թռչում տեղներիցս, ոտքի կանգնում;*

*Պապս փափախը բռի մեջ օդ էր բարձրացնում, նայում աջ-ձախ՝ տեսնի բոլո՞րս ենք պատրաստ: Մենք, շունչներս պահած, սպասում էինք նշանի:*

*Պապս ձեռքի մի խաբուսիկ շարժում էր անում օդի մեջ: Մենք պոկվում էինք դեպի դուռը: Բայց փափախը դեռ մնում էր նրա ձեռքում, ու մենք կես ճամփից հուսախաբ ետ էինք գալիս նախկին դիրքերը:*

*Այսպես, մի քանի խաբսից հետո, նա փափախը թափով շպրտում էր դեպի դուռը: Մենք գայլի ճուտերի նման վրա էինք հասնում, իրար գըլխի թափված, փափախը խլում մեկ-մեկու ձեռքից, բերում իրեն տալիս:*

*Բերողը մի չամիչ էր ստանում որպես պարգև:*

*Եվ այս խաղը տևում էր մինչև երեկո:*

*Բայց ինչո՞ւ մինչև երեկո: Մինչև գարուն:*

*Մեծ նանը թոնթորում էր ամուսնու վրա.*

*—Հերդ խոր գնա, հերդ: Տես է՛, գյոզալ փափախդ բրդահան արին...*

*Պապս ժպտում էր՝ ծորուն, բարեհոգի ժպտով, ու այդ բարեհոգի ժպտի միջից էլ ասում.*

*—Բա՛ն չկա, կնիկ, թող վազեն, չթմրեն: Թե չէ՝ ձմեռը թմրողը գարնանը գործ չի անի...*



## ԱՇՈՒՆ

ԳՐԵՏ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Աշունն անտառն է մտել,
Ու փաթաթվել ծառերին,
Մեկին կանաչ է ներկել,
Մեկին՝ կարմիր ու դեղին։
Մեկի գարնան շորերը
Հանել տվել է քամուն,
Մեկին նետել ջրերը,
Հանգրվանել օվկիանում։
Մեկը՝ ատլաս շորերով,
Մեկը՝ բոսոր ու դեղին,
Մեկն էլ իր գորշ ճյուղերով
Ծիծաղում է արևին։
Կանգնած նայում անտառին,
Մտածում եմ շարունակ.
Այս ե՞րբ ներկեց ծառերին,
Աշունն այսքան հասարակ.

## ՀՈՂՄԸ

ՎԼԱԴԻՄԻՐ ԲԱՂԴԱԳՅՈՒԼՅԱՆ

Սպիտակ ու ցուրտ սարերի դիմաց
Խելահեղ հողմը չարությամբ խնդաց։
Վնգստաց շան պես, սուրաց ինչպես խենթ,
Կռվի մեջ մտավ քարաժայռի հետ...
Անտառի եզրին խոլաբար պարեց։
— Հին գիժն է,— ասին ծառերը տարեց,—
Ախ, ի՞նչ է ուզում այդ գոռոզ քամին
Ձմռան այս դաժան իրիկնաժամին...—
Ահա չար հողմը մի հին տուն փլեց,
Արածից շատ գոհ՝ սանձարձակ սուլեց,
Հանդիպեց մի թույլ, մենավոր ծառի,
Նրան էլ պոկեց առանց պատճառի...
Վերջում էլ հանգավ ձորի մեջ մի մութ,
Իբրև բնության թշնամին մնգութ։

# ՄԱՆՈՒՇԱԿՆԵՐԸ ՄՆԱՑԻՆ ՃԱԽԱՐԱԿԱՁՈՐՈՒՄ

ՀՄԱՅԱԿ ԲԱԽՏԱՄՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Մեր գյուղը վեց տնից էր բաղկացած։ Հիմա կծիծաղեք, թե էլ ի՞նչ գյուղ, որ վեց տուն ուներ։ Դե դրա համար էլ դպրոց չունեինք և ես ու Շուշանը հարևան գյուղն էինք գնում։ Հեռու չէին այդ գյուղերը՝ մեկը բլրի գագաթին, մյուսը՝ ճակատին։ Ասում էին, թե մեր երկու գյուղերը «գլորվելու» են Փոնդալյան գետի ափը։ Ո՞նց պիտի գլորվենք։ Ինձ թվում էր, թե բոլոր տները պիտի պարանով կապեն և տրակտորով քաշեն ձորը։ Մայրս ասաց.

— Ո՛չ, դու չես տեսել, հայրդ Բարալուն քերծի քարերից մի այնպիսի տուն է սկսել կառուցել, որ երկու սարից այն կողմը պիտի երևա։

Ես անհամբեր սպասում էի այդ օրվան։ Իմացա, որ Շուշանենք էլ այդպիսի տուն պիտի ունենան։ Այսօրվա պես հիշում եմ, թե ինչպես Շուշանի մայրիկն ինձ ասաց.

— Արսեն, որդիս, բռնի՛ր Շուշանի թևից, որ չսայթաքի, թե չէ կընկնի ձորը և նոր տունը չի տեսնի։

Ես Շուշանի թևը միայն դպրոցի մոտ էի բաց թողնում։ Ձմեռը դժվար էր քայլել սառած ձյան վրայով, հաճախ սայթաքում էի, բայց ինձ պահում էի՝ Շուշանի աչքին ճարպիկ երևալու համար։ Մտածում էի, որ ընկնեմ, նա իր մայրիկին ու եղբայր Հակոբին կասի՝ կծիծաղեն վրաս։

Ամենից լավը գարունն էր, թեև երբեմն ուշանում էինք դասերից, բայց հետաքրքիր էր անցնում ճանապարհը։ Ծաղկեփնջեր էինք կազմում մեր ուսուցիչների և ընկերների համար։ Մի օր էլ ծաղիկներով այնպես զարդարեցի Շուշանին, որ թվում էր, թե Ճախարակաձորում ծաղիկներ չմնացին։ Այդպես էլ դպրոց գնացինք։ Մինչև դպրոցին մոտենալը ոչ ոք չճանաչեց Շուշանին։ Հաջորդ օրը նա փորձեց ինձ ծաղկեթուփ դարձնել՝ չհաջողվեց։ Մենք կոխ բռնեցինք։ Ես կարող էի Շուշանին գետնով տալ, բայց միշտ ընկնում էի, որ նա ծիծաղի։ Դրանից թափվում էին իմ վրայի ծաղիկները։ Շուշանն ավելի էր բարկանում, բայց մի անգամ էլ, երբ շատ խնդրեց, ես թույլ տվեցի մի քանի փունջ մանուշակ կապել իմ ոտքերին։

— Գալի՜ս են,— դեռ դպրոցին չհասած՝ կանչեց մեր դասարանցի Բաբկենը,— Ճախարակաձորը շարժվում է դեպի դպրոցը։ Շուշանն ու Արսենը գարուն են բերում։

Մենք կարմրեցինք, իսկ մեր ընկերները ծիծաղե-

լով, յուրաքանչյուրն իր բաժինն էր վերցնում մեզանից։ Դա վերջին գարունն էր։ Մի օր էլ, իրիկնադեմին, երբ ես ու Շուշանը դպրոցից տուն էինք վերադառնում, մեր մայրերը դիմավորեցին մեզ։

Սաթիկ մայրիկն ինձ գրկեց, մայրս՝ Շուշանին։

— Բալիկնե՛ր, վաղը Քոնդալանը գետի ափն ենք «գլորվում»,— ասացին ու ծիծաղեցին։— Այնտեղ էլ պիտի ապրենք։

—Բա ընկեր Աշխե՞նը, ընկեր Բարսեղյա՞նը։

—Նրա՛նք էլ, նրա՛նք էլ են «գլորվելու»։

Հաջորդ օրը բոլորս տեղափոխվեցինք գյուղ։ Նույն օրն էլ դպրոց գնացինք, ի՜նչ դպրոց։ Հովտում կանգնած դպրոցի վերնահարկը, թվում էր, թե հավասար է Քոնդալանը եզերող սարերին։ Այնտեղ էին մեր դասարանցիները, մեր ուսուցիչները։

— Ընկեր Աշխե՜նը,— բղավեց Շուշանը և վազեց դեպի նա։

Նրա հետևից գնացի և ես։

— Արսե՛ն, ու՞ր են մանուշակներդ,— հարցրեց ընկեր Աշխենը։

Լսվեց զանգի ձայնը։

— Մանուշակները մնացին Ծախսարկաձորում։



# ԴԱՍԸ

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ

Վարսիկի ավագ եղբայրը՝ Վազգենը պատրաստվում էր ընկերների հետ անտառ գնալ՝ հոն հավաքելու։

—Ի՜նչ կլինի, ինձ էլ վերցրեք հետներդ, Վազգեն,— խնդրեց Վարսիկը։

—Իզուր մի՛ խնդրիր, որ ասացի չէ՝ չէ՛,—կտրուկ պատասխանեց Վազգենը։

— Մայրիկ ջան, ի՜նչ կլինի ասես, որ ինձ էլ տանի։ Այ, Հակոբը Նազիկին վերցնում է, իսկ ես ու Նազիկը հո ընկերուհիներ ենք.— աղաչեց Վարսիկը։

— Լա՛վ, Վազգեն, Վարսիկին էլ տարեք,— խնդրեց մայրիկը։

Վարսիկի դեմքը փայլեց ուրախությունից։

— Ախր, ի՞նչպես վերցնենք,— բողոքեց Վազգենը,— սա մեր գլխին միշտ մի օյին խաղացել է։ Մեկ տեսար՝ կոշիկն է կորցնում, ու մենք ստիպված ենք լինում գրկած տանել նրան, մեկ էլ թռչում նստում է հորթերի մեջքին ու այնքան զբոսնում, մինչև որ նրանք գետին են գլորում սրան։ Մի անգամ էլ քթից արյուն եկավ, որովհետև այնքան կամակորն է, որ այն շոգին չուզեց գլուխը ծածկել։ Վերջին անգամ էլ թաքնվեց, որ մեզ վախեցնի։ Եվ, իսկապես, ո՜նց վախեցանք։

— Բայց չէ՞ որ անցյալ տարի ես փոքր էի, իսկ հիմա արդեն մեծացել եմ,— արդարացավ Վարսիկը,— ես հո միշտ չարություն չե՞մ անի։

— Դե՛ լա՛վ, լա՛վ, էս անգամ էլ կտանեմ,— վերջապես համաձայնեց Վազգենը,— տեսնենք՝ ոնց ես քեզ պահելու։

Վարսիկն ուրախությունից ծափ տվեց։

Սկզբում նրանք գնում էին հնձած արտով։ Գույնզգույն ծղրիդները բզզալով թռչում էին երեխաների ոտքերի արանքից։ Արևը շատ բարձրից էր լուսավորում, շոգ էր։ Վարսիկը՝ հլու-հնազանդ, գլուխը շոր փաթաթեց, որ արևահար չլինի։ Նա քայլում էր՝ խելոք ու հեզ Նազիկի հետ, ձեռք-ձեռքի տված։ Երեխաներն ընդամենը վեցն էին, չհաշված փոքրիկ Վարսիկին ու Նազիկին, և բոլորն էլ՝ համերաշխ ու մտերիմ։ Նրանք միշտ միասին էին անտառ գնում՝ հատապտուղ հավաքելու, միասին էին արշավներ կազմակերպում, գնում էին դաշտ, օգնում կոլտնտեսականներին։ Իսկ ամենագլխավորը, նրանք բոլորն էլ լավ էին սովորում։

Վերջապես երեխաները հասան դաշտի եզրին ու թեքվեցին դեպի ձորը։ Ձորում զով էր ու խաղաղ։ Թվում էր, թե ինչ-որ մեկն ամեն օր խնամում, կարգի էր բերում ձորը։ Խոտն այնտեղ փափուկ ու հարթ էր, ինչպես գորգը, սարալանջերը ևս հեռվից կարծես գորգով ծածկված լինեին։ Իսկ ձորի եզրերին, լեռների ստորոտում, աճում էին փոքրիկ թփուտներ, և ամեն մի թփում մի չակ էր բնակվում։ Մեկի մեջ ապրում էր ինչ-որ մի թռչնակ՝ ձագուկների հետ, մյուսում՝ ծղրիդ, որը շարունակ իր միալար երգն էր երգում, իսկ երրորդում ապրում էր ծույլ խխունջը՝ իր տնակով։

Լիճը շատ մեծ չէր։ Շուրջը՝ ոչ մի բուսականություն, միայն ափին մի մեծ կաղնի էր կանգնած, որն իր հզոր, կանաչ ճյուղերը տարածել էր չորս կողմը։ Լճի մեջ, մինչև կոկորդները խրված, նստել էին երկու գոմեշ ու զովանում էին, իսկ երրորդը տեղավորվել էր կաղնու տակ, հենց ափի մոտ։ Վարսիկը, որ մինչ այդ իրեն լավ էր պահում, մոռանալով խոստումը, թռավ գոմեշի մեջքին, բռնեց նրա եղջյուրներից ու բացականչեց.

— Տեսե՛ք, ինչ հիանալի «Վոլգա» ունեմ։

Եվ մինչ երեխաները կհասցնեին բան ասել,



Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

գոմեշը վեր կացավ ու Վարսիկի հետ միասին մինչև կոկորդը ընկղմվեց ջուրը։

Սարսափից Վարսիկը ծամածռեց դեմքը։ Ջուրը մինչև նրա ուսերն էր հասնում։ Լճի ջուրը այնքան էլ սառը չէր, սակայն Վարսիկն ամբողջ մարմնով դողում էր. նախ՝ նա բոլորովին լող տալ չգիտեր և, երկրորդ, նա գորտերից սարսափելի վախենում էր, իսկ գորտ լճում ինչքան ասես կար։

— Մի՛ վախենա, Վարսիկ,— սիրտ էին տալիս նրան երեխաները ափից,— դու պոզերից ամուր բռնիր, գոմեշը ծանրաշարժ կենդանի է, նա քեզ վայր չի գցի, իսկ գորտերն էլ քեզ չեն ուտի։ Բայց ինչպե՞ս ափ հանենք սրան։ Լողալով գոմեշին մոտենալը վտանգավոր է, իսկ այդպես նա կարող է ժամերով կանգնած մնալ։

— Ես հնարը գտա՜,— հանկարծ կանչեց Օնիկը։— Շուտ տվե՛ք ինձ ձեր գոտիներն ու գլխաշորերը։

Գոտիներն ու գլխաշորերը կապեցին իրար։ Մի ծայրին օղակ արեցին ու նետեցին ուղիղ գոմեշի եղջյուրներին։

Հինգ հարյուր քայլ անելուց հետո, Հակոբը ձեռքով ցույց տալով մի ուղղություն, ասաց.

— Եկեք այս կածանով բարձրանանք մինչև ա՛յ էն ծառը, իսկ այնտեղից կտեսնենք, թե որ ուղղությամբ գնանք։

Հասնելով ծառին, Հակոբը բարձրացավ նրա կատարը, հանեց դաշտային հեռադիտակն ու դիտեց շուրջը։

— Գտա՛,— ասաց նա, իջնելով ծառից,— ես տեսա ծառեր, որոնց վրա խոշոր հոն կա։

Եվ իրոք, երբ երեխաները մոտեցան այդ ծառերին, տեսան, որ ծառերը ծածկված են հոնի խոշոր պտուղներով։

Երբ երեխաների զամբյուղներն արդեն լիքն էին կարմիր հոնով, Թամարան ասաց.

—Երեխանե՛ր, եկեք գնանք լիճը, ա՛յ, շատ մոտ է այստեղից. կհանգստանանք, այնտեղից էլ տուն կվերադառնանք։

Բոլորը համաձայնեցին։

—Վարսի՛կ, պի՛նդ կաց։ Երեխաներ, քաշե՜ք։

Բայց քաշելն այնքան էլ հեշտ բան չէր, ափ էր հասնել գոտու փոքրիկ ծայրը միայն, որից կարող էր բռնել երեխաներից միայն մեկը։

— Վազգե՛ն, ինձ տուր փայտը, իզուր էինք քեզ վրա ծիծաղում. ինչ լավ է, որ կտրեցիր, հիմա դա մեզ շատ պետք կգա,— ասաց Հակոբը և գոտին ամուր կապեց փայտի մեջտեղը։

Հետո երեքը բռնեցին փայտի մի ծայրից, երեքն էլ՝ մյուս և ամբողջ ուժով սկսեցին քաշել։

Սկզբում գոմեշը համառորեն չէր ուզում շարժվել, բայց հետո, երեխաներին խղճաց, թե ինքն էլ արդեն ձանձրացել էր կանգնելուց, դուրս եկավ ջրից։

Վազգենն ու երեխաները չհանդիմանեցին Վարսիկին, ոչ էլ ծիծաղեցին նրա վրա, հանեցին թաց շորերն ու չորացրին։

Տուն վերադառնալիս բոլորն էլ լուռ էին։ Ամեն մեկը մտածում էր այն մասին, որ լավ, շատ լավ դաս տվեց գոմեշը անհանգիստ Վարսիկին. այդ դեպքից հետո Վարսիկը ընդմիշտ կհրաժարվի իր չարաճճիություններից։ Այդ էր մտածում և ինքը՝ Վարսիկը։

# ԳԱՂՏՆԻՔ

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ինչ որ դու դեռ չգիտես,
Մեծ գաղտնիք է թվում քեզ։
Նայում ես այս նկարին՝
Ծովն է ծուլված կտավին,
Թեկուզ ո՛չ ջուր, ո՛չ հնչյուն,
Բայց լսում ես մռնչյուն։
Ծովն ես տեսնում կատաղի
Փոքրիկ գրկում կտավի...
Նկարել են, բայց ինչպե՞ս,
Այդ հրաշք է թվում քեզ։
Նկարիչն այդ, հիմա ծեր,
Փոքրուց քեզ պես մտածել,
Չի իմացել գուցե նա,
Որ նկարիչ կդառնա...



Կամ նայի՛ր այս քանդակին.
Նույն քարն է, բայց թանկագին,
Ասես մարդ է, ո՛չ քանդակ,
Սիրտ է զարկում կրծքի տակ։
Քանդակագործ մի վարպետ,
Կռվել է այս քարի հետ,
Հաղթել է նա ու քարին
Շունչ է տվել մարդկային։

Ինչ որ դու դեռ չգիտես,
Մեծ գաղտնիք է թվում քեզ։
Ապա մի լա՛վ մտածիր,
Գաղտնիքն ինքդ իմացիր.
Որքա՜ն երազ ու ձգտում՝
Փոքրիկ-փոքրիկ քո սրտում։
Թող որ լինի դժվարին՝
Աշխատա՛նքն է բանալին.
Այս իմ երգն էլ, սիրելի՛ս,
Աշխատանքն է տվել ինձ...



Նկ. ԷԴԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# Թող Արսենը մենակ չմնա



ԼՐԱ ԲԱԼԱԳՅԱՆ

Ամեն առավոտ Արսենը մանկապարտեզ գալիս՝ լաց է լինում։ Լաց է լինում ամբողջ ճանապարհին, իսկ մանկապարտեզի դռան մոտ կպչում է մայրիկին ու պոկ չի գալիս։ Մայրիկը ուշանում է աշխատանքից, սկսում է համոզել նրան, բայց ոչինչ չի օգնում։ Արսենը լաց է լինում առանց դադարի։

— Ինչու՞ ես լալիս, Արսեն,— հարցնում է դաստիարակչուհին։

— Արսեն, լռիր,— խնդրում է մայրիկը։

— Ամոթ, արդեն մի տարի է, ինչ մանկապարտեզ է գալիս, բայց էլի լաց է լինում,— ասում է Հասմիկի մայրիկը։

— Ինչ տարօրինակ տղա է,— ավելացնում է մեկ ուրիշը։

Իսկ Արսենը ինքն էլ չգիտի, թե ինչու է լաց լինում։ Նա ավելի ամուր է կպչում մայրիկին ու ամբողջ կոկորդով մեկ սկսում է բղավել։

Նվարդիկը շատ է տխրում, որ Արսենը լաց է լինում։ Նա կանգնում է մի անկյունում և լայն բացած խոշոր աչքերով նայում է հեծկլտացող տղային։ Երբ մայրիկը գնում է և երբ Արսենը մենակ է մնում, Նվարդիկը բռնում է նրա ձեռքից և նրանք միասին բակ են վազում խաղալու։

Նվարդիկի մայրիկը բոլորից շուտ է գալիս մանկապարտեզ՝ իր աղջկան տուն տանելու։ Որովհետև նա բոլորից շուտ է վերջացնում աշխատանքը։ Ահա այդ օրն էլ նա ծնողներից առաջինը եկավ մանկապարտեզ։ Նվարդիկը տեսնելով մայրիկին՝ շատ ուրախացավ։ Ճանապարհին նա սկսեց պատմել.

— Այսօր նոր ոտանավոր սովորեցինք՝ Հայրապետ Հայրապետյանի «Ծիտիկը»։

Ու նա սկսեց արտասանել բանաստեղծությունը, բայց որոշ տողեր մոռացավ ու շփոթված կանգ առավ։

— Արսենը առավոտյան էլի շատ լաց եղավ,— հանկարծ հիշեց Նվարդիկը, և նրա դեմքը մտախոհ արտահայտություն ստացավ։

— Արսենը երես առած է ու անկարգ, դու խելոք երեխաների հետ խաղա։

— Ո՛չ, նա լավն է,— ասաց Նվարդիկը։

— Եթե լավն է, ինչու՞ է ամեն առավոտ լաց լինում։

— Որովհետև, որովհետև Արսենի մայրիկը բոլորից ուշ է գալիս մանկապարտեզ։

— Հետո ի՞նչ։



Նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ

— Նա ամեն օր մենակ է մնում մանկապարտեզում, բոլորովին մենակ,— տխուր ասաց Նվարդիկը ու լռեց։ Երբ տուն էին հասնում, նա բռնեց մայրիկի ձեռքից.— Դու վաղը էլ շուտ չգաս մանկապարտեզ։

— Ինչու՞.— զարմացավ մայրիկը։
— Ուզում եմ խաղալ, դու ուշ արի, բոլորից ուշ։
— Լավ, ինչպես ցանկանում ես։
... Հաջորդ օրը մայրիկն, առաջվա նման, աշխատանքից անմիջապես հետո չգնաց Նվարդիկի հետևից։ Արդեն բավական ուշ էր, երբ նա մտավ մանկապարտեզ, այնտեղ անսովոր լռություն էր։
Գետնին փռված գորգի վրա նստած, Նվարդիկը Արսենի հետ խորանարդներից ինչ-որ բան էր սարքում։ Երեխաները այնպես էին տարված խաղով, որ չնկատեցին մայրիկին։
—Նվարդի՛կ,— կանչեց մայրիկը։
Փոքրիկ աղջիկը վեր թռավ տեղից և ուրախացած վազեց մայրիկին ընդառաջ։ Բայց հանկարծ ինչ-որ բան հիշեց, կանգ առավ, նայեց Արսենին, հետո մայրիկին ու կամացուկ ասաց.
— Ինչու՞ շուտ եկար։
Մայրիկը զարմացավ։
— Շուտ չի, տես, մանկապարտեզում ոչ մի երեխա չի մնացել։
— Չէ՛, շուտ ես եկել,— համարյա լացակումեց Նվարդիկը,— բա Արսենը էլի՞ մենակ մնա։
— Այ թե ինչ... — ժպտաց մայրիկը,— դու չէ՞ս ուզում, որ Արսենը մենակ մնա։
— Այո՛,— գլխով արեց աղջիկը։
Մանկապարտեզում արդեն բոլորը գիտեն այդ նորությունը։ Արսենը առավոտյան այլևս լաց չի լինում, և նրա ձայնը էլ չի լսվում ամբողջ փողոցով մեկ։
— Ապրի Արսենը, մեծացել է ու խելոքացել,— ասում է դաստիարակչուհին։
— Այդ ի՞նչպես պատահեց,— հետաքրքրքրվում են բոլորը։
Արսենը ինքն էլ չի հասկանում, թե այդ ինչպես պատահեց։ Նա հարցական աչքերով նայում է Նվարդիկին։ Հետո բռնում է նրա ձեռքը և միասին վազում են բակ։
... Ամեն անգամ տուն վերադառնալիս Նվարդիկը ուրախ պատմում է մայրիկին մանկապարտեզում տեղի ունեցած նորությունները։ Իսկ երբ նրանք մոտենում են իրենց տանը, Նվարդիկը կամացուկ ձայնով պատվիրում է մայրիկին.
— Վաղը էլի ուշ կգաս։

*ՄԱՐԻԱ ՀԱԿՈԲՅԱՆ*

## ԱՇՈՒՆ

Աշնան քամին խելագար
Այգիներում բռնեց պար:
Տերևները ծառերի,
Կապած ոսկե ծիածան,
Երամի պես ծիծառի
Թևին տալով՝ հեռացան:
Իսկ ծառերը գլխահակ
Սվսվացին ու լացին,
Անհովանոց, անվերմակ,
Անձրևի տակ մնացին:

## Ի՞ՆՉ ՊԱՏՐԱՍՏԵՄ ԹԱՇԿԻՆԱԿԻՑ

Մայրիկ, տուր ինձ մի թաշկինակ,
Ես պատրաստեմ փոքրիկ սահնակ,
Հետո գայլի բացված բերան,
Հետո սփռոց՝ ծիծը վրան,
Հետո կլոր, սիրուն գլխարկ,
Առագաստով նավ ու նավակ:
Մի թաշկինակ տուր ինձ, մայրիկ,
Ես պատրաստեմ մի լավ ծրար,
Որ տիկնիկի հետ իմ փոքրիկ
Միշտ նամակներ գրենք իրար:

# Հեռախոսը



ՄԱՐՈ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Վահանն ու Աղավնին ասում են, որ աշխարհում հեռախոսից լավ բան չկա, իսկ հորաքույրը մտածում է՝ նայած ինչ դեպքում։

Օրինակ, մի անգամ Վահանն ու Աղավնին վիճում են։ Մեկ էլ Աղավնին հորաքրոջ աշխատանքի ժամին զանգ է տալիս ու գանգատվում.

— Հորաքո՛ւյր, գիտե՞ս ինչ. Վանիկը իմ նկարչական տետրն ու գունավոր մատիտները պահել է ու չի տալիս, որ ես նկարեմ։ Ասա՛, թող տա։

— Կանչի՛ր Վահանիկին հեռախոսի մոտ,— ասում է հորաքույրը։

Աղավնին կանչում է։ Վահանը չի գալիս։

— Չի գալիս, հորաքո՛ւյր,— պատասխանում է Աղավնին։



— Ասա՛, որ հորաքույրը կանչում է։

— Վահա՛ն, արի՛, հորաքույրը կանչում է,— լսափողը ականջին՝ ամբողջ ուժով ձայնում է Աղավնին։— Չի՛ գալիս, հորաքույր։ Ասում եմ, ասում է՝ չեմ գալիս։ Գիտե՞ս ինչ, հորաքո՛ւյր, դու կանչի՛ր, էլի՛։ Որ դու կանչես, անմիջապես կգա և տետրս ու գունավոր մատիտներս կտա։ Ես նկարել եմ ուզում։ Ասա, է՛լի, հորաքո՛ւյր։

— Դե, Վահանիկին կանչի՛ր հեռախոսի մոտ, որ ասեմ։

— Վահա՛ն, արի՛, հորաքույրը կանչում է։

Ու այդպես, հորաքույրը լսափողը ականջին սպասում է, Աղավնին կանչում է. Վահանը չի գալիս։ Վերջապես հորաքույրը խոստանում է աշխատանքից հետո գնալ նրանց տուն և Վահանին հանդիմանել։

Մի օր էլ, ուղիղ կեսգիշերին, մեկ էլ հեռախոսը ուժեղ, շատ ուժեղ զանգահարում է։ Հորաքույրը խորը քնած է։ Զանգի ձայնից նա վեր է թռչում ու մի ակնթարթում, բացի լավ բանից ամեն ինչ մտածելով, վերցնում է լսափողը.

— Լսում եմ,— մի կերպ շշնջում է հորաքույրը։

— Հորաքույր, դո՞ւ ես։ Վահանիկն է խոսում։

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

— Վահանի՞կը...— զարմանում է հորաքույրը։— Այս կեսգիշերի՞ն... Իսկ ի՞նչ է պատահել, տղա՛ս։

— Ոչինչ, հորաքո՛ւյր, մի՛ անհանգստացիր։ Ես ուղղակի, հենց այնպես։ Ծարավ էի, արթնացա ջուր խմեցի ու մեկ էլ մտածեցի քեզ զանգ տամ ասեմ, որ ննջասենյակից մինչև խոհանոց մենմենակ եկա ու ջուր խմեցի։ Լսո՞ւմ ես, հորաքույր։



— Լսում եմ, տղա՛ս, լսում եմ։

— Ո՛չ մայրիկին արթնացրի, ո՛չ հայրիկին։ Աղավնին էլ է քնած, գիտե՞ս, հորաքո՛ւյր։ Տեսնո՞ւմ ես ինչ անվախ տղա եմ, հորաքույր։ Ախր, մեծ եմ է արդեն։

— Դե, իհա՜րկե, տղա՛ս, արդեն մեծ տղա ես։ Վախենալն այլևս ամոթ է,— պատասխանում է հորաքույրը։— Դե լա՛վ, Վահանիկ, ուշ է, գնա քնի՛ր։

— Հիմա՛, հորաքույր։ Հորաքո՜ւյր, հայրիկն ասում է, որ մի տարի էլ քնեմ ու վեր կենամ, հետո պիտի դպրոց գնամ։

— Ճիշտ է ասում։ Դե գնա քնի՛ր, տղա՛ս։

— Հիմա՛, հիմա՛։ Հորաքո՛ւյր, հորաքո՛ւյր, որ դպրոց գնամ է՞, ամեն օր գերազանցիկ պիտի լինեմ։

— Անպայման։ Դե գնա՛, գնա քնի՛ր։

— Դե լավ, դու էլ գնա քնի՛ր, հորաքո՛ւյր։ Բարի գիշե՛ր։

— Բարի գիշե՛ր, տղա՛ս, բարի գիշե՜ր,— պատասխանում է հորաքո՛ւյրն ու լսափողը դնում։

«Աշխարհում հեռախոսից լավ բան չկա»,—մտածում է Վահանն ու անկողին մտնելուն պես մուշ-մուշ քնում։

Մինչդեռ հորաքույրը մինչև լույս չքնեց։

Այ, հենց դրա համար էլ, երբ Վահանն ու Աղավնին ասում են, որ աշխարհում հեռախոսից լավ բան չկա, հորաքույրը մտածում է՝ նայած ինչ դեպքում։

Անցան օրեր։ Մի անգամ հորաքույրը իրեն վատ զգաց, այնքան վատ, որ անկողնուց վեր կենալ չկարողացավ։ Տանն էլ ոչ ոք չկար, որ գոնե մի բաժակ ջուր տար։ Հորաքույրը անմիջապես հավաքեց Վահանիկենց հեռախոսի համարը և հայտնեց, որ ինքը հիվանդ պառկած է։ Շատ չանցած Վահանն ու Աղավնին մայրիկի հետ եկան հորաքրոջ մոտ։ Եվ մինչ մայրիկը հորաքրոջ համար նախաճաշ կպատրաստեր, Վահանն ու Աղավնին հորաքրոջ մոտ նստած՝ բացատրում էին, որ.

— Աշխարհում հեռախոսից լավ բան չկա։

— Ճիշտ է, միանգամայն ճիշտ է,— այս անգամ ասաց հորաքույրը։

# ՓԻՍԻԿՆԵՐԸ

ՄԻՔԱՅԵԼ ՂԱԼԹԱԽՉՅԱՆ

Փիսոն ունի երկու սիրուն,
Փոքրիկ ձագեր՝ չալպտուրիկ,
Խաղ են անում ու քուն մտնում,
Մեկն ախպեր է, մեկը՝ քույրիկ։

Երբ մայր փիսոն դուրս է գնում,
Որ ձագերին սնունդ ճարի,
Փիսիկներին փոքրիկ Լալան
Խնամում է մեծավարի։

Ու հարցնում է իր մայրիկին.
— Փիսիկները ինչու՞ մեզ պես,
Երբ մայրիկն է աշխատանքի,
Չեն հաճախում մանկապարտեզ։



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# ՀԵԾԱՆԻՎ

ԷԴՈՒԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ



Ա՜յ հեծանիվ, հեծանիվ,
Ունես երեք մեծ անիվ,
Ունես ղեկ ու նստարան,
Քեզ հեծնում է Թամարան,
Հեծնում է ու սլանում,
Ով տեսնում է՝ զարմանում...
Ու չեն հասնում էլ նրան
Ո՛չ Գուրգենը, ո՛չ Արան,
Ո՛չ Տիգրանը, Խաչիկը,
Ոչ էլ չեմպիոն Վաչիկը։
Արագ-արագ, մի շնչում,
Ծտի նման է թռչում
Եվ հաղթում է բոլորին,
Մեծերին ու փոքրերին։

Ա՜յ, հեծանիվ, հեծանիվ,
Ունես երեք մեծ անիվ,
Երբ քշում է Թամարան,
Ո՞վ կհասնի էլ նրան։

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# ԲՈՆԴՈՆ

*ՄՈՒՇԵՂ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ*

*Նկ. ՀՐԱՉՅԱ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ*

Այդ օրը լրացավ իմ ինը տարին։

Ես գերազանցիկ էի ու կարգապահ, տանը օգնում էի մայրիկիս, լսում մեծերին։ Դրա համար էլ հայրիկը խոստացել էր ինձ համար բերել արջի քոթոթ, այսինքն՝ փոքրիկ արջ։ Իհարկե, իսկական, դե, ես արդեն երեխա չէի, որ հրապուրվեի ինչ-որ արջանման խաղալիքներով։

Եվ ահա, դասերս սովորելուց հետո, նըստել ու անհամբերությամբ սպասում էի հայրիկիս։

Վերջապես հայրիկը եկավ։

— Ուռա՜, — ամբողջ ուժով գոչեցի ես, երբ տեսա հայրիկի հետևից եկող փոքրիկ, շագանակագույն արջուկին և նետվեցի դեպի նա։

Արջուկը տեսնելով իմ անսպասելի հարձակումը՝ մռնչաց, կանգնեց ետևի թաթերի վրա և պատրաստվեց պաշտպանվելու։

Ես շփոթված կանգ առա, իսկ հայրիկս լուրջ, խրատական տոնով դիմեց բրդոտին.

— Արջու՛կ ջան, Արայիկը լավ տղա է, գերազանցիկ, կարգապահ, խաղա՛ նրա հետ։



Հասկացա՞վ բրդոտը նրա ասածները, թե՞ ոչ, չգիտեմ, բայց խոսելու ժամանակ նա ծանրորեն տմբտմբացրեց գլուխը, իսկ հետո երբ մոտեցա՝ չդիմադրեց։

Մենք արագ մտերմացանք։ Ես նրան անվանեցի Բոնդո։

Առաջին իսկ օրը, թեյելու ժամանակ, Բոնդոն սեղանի վրայից թռցրեց մեղրով լի ամանը, Կարինեն նետվեց Բոնդոյի հետևից, մենք ծիծաղում էինք։

— Թող ուտի, Կարինե՛ ջան, թող ուտի, ախր քաղցած է, մեղք է,— խնդրում էի քրոջս, բայց նա չլսելով ինձ՝ ամբողջ ուժով քաշքշում էր Բոնդոյին։

— Չտա՜ս, Բոնդո՛, չտա՜ս,— բղավեցի ես, բայց դա էլ չօգնեց, Կարինեին հաջողվեց խլել մեղրը։

Դրանից հետո, չնայած Բոնդոն նորից ծանր ու մեծ նստեց կողքիս դրված աթոռին, բայց էլ ոչնչի ձեռք չտվեց, ոչինչ չկերավ։

— Կարինեից է նեղացել,— ենթադրեցի ես։

Բայց նա չկերավ նաև հաջորդ օրը, մյուս օրը։ Անհանգստացած դիմեցի հայրիկիս։

— Ոչինչ, երբ քաղց զգա, ես կկերակըրեմ, դու մի՛ մտահոգվիր,— փորձեց հանգստացնել նա։

Բայց ինչպե՜ս չմտահոգվեի, ինչպե՜ս չանհանգստանայի, տեսնելով դեպի ուտելիքները ունեցած նրա համառ անտարբերությունը։

Մի օր էլ, դպրոցից տուն վերադառնալիս, նա ամեն օրվա պես չդիմավորեց ինձ, պատշգամբում էլ չէր. ինչ-որ վատ

բան կանխազգալով. ներս սլացա։ Բոնդոն դուրս չէր եկել մահճակալիս տակից։

—Բոնդո՜ ջան, Բոնդո՜,— կանչեցի անհանգստացած, բայց նա չտմբտմբացրեց բրդոտ գլուխը, չբացեց փայլուն, խելացի աչքերը։

Բոնդոն սատկել էր։

Իսկ երեկոյան, երբ հայրիկը տեսավ լացից ուռած ու կարմրած աչքերս, հանկարծ հիշեց.



— Ինչպե՞ս էի մոռացել, չէ՞ որ այսօր Բոնդոյին կերակրելու օրն է։ Ոչինչ, Արայիկ, քիթդ մի՛ կախիր, ամեն ինչ կկարգավորենք։

Ես թերահավատորեն նայեցի նրան։

— Կկարգավորենք, չէ՞ մի՜...

Հայրիկը մոտեցավ Բոնդոյին և շոշափեց նրա բրդոտ կողերը, հանկարծ լսվեց մի թույլ չխկոց, ու նրա ձեռքերում հայտնվեց էլեկտրական հոսանքի փոքրիկ մարտկոցը։

Աչքիս չէի հավատում։

— Ուրեմն... Բոնդոն,— շշնջացի ես և չկարողացա շարունակել։

— Այո՛, Բոնդոն մեքենա է, բայց հասկացող, մտածող մեքենա, որին ստեղծել է կիբեռնետիկան, – ասաց հայրիկս։

Ես, իհարկե, չգիտեի ինչ բան է կիբեռնետիկան, և ժամանակ էլ չունեցա հարցնելու, որովհետև հայրիկն արդեն տեղադրել էր նոր մարտկոցը և վերակենդանացրել Բոնդոյին։

Եվ Բոնդոն դեռ այսօր էլ ամենաիսկական արջի նման մռնչում է՝ Գագիկի փոքրիկ շանը տեսնելիս, քաշում է Անահիտի չալ կատվի պոչը, թաթով խփում գլխին։

Եվ մինչև այսօր էլ ո՛չ Գագիկն ու փոքրիկ շունը, ո՛չ էլ Անահիտն ու իր չալ կատուն, չեն հասկացել, որ Բոնդոն իսկական արջ չէ։

## ԹԵ ԻՆՉՊԵՍ ՊՍՏԻԿԸ ԼՈՂԱԼ ՍՈՎՈՐԵՑՐԵՑ ՃՍՏԻԿԻՆ









# ԾՏԵՐԸ

ՎԱՐԴԱՆ ԲԱԼԱՅԱՆ

Մայրս ամեն առավոտ մեր հավերին կուտ էր տալիս գոմի կտուրին։ Մեր գոմի կտուրը միշտ էլ չոր էր լինում, որովհետև հենց որ ձյուն էր գալիս, հայրս վերցնում էր ցախավելն ու մաքրում։

Մայրս չթե գոգնոցը բռնած՝ բարձրանում էր կտուրն ու բարձր ձայն «Ջու՛-ջու՛-ջու՛» կանչում։ Ամեն կողմից, թր՜ռ, վազելով գալիս էին հավերն ու ոսկեփետուր աքլորները, խռնվում նրա շուրջը և ուրախ կչկչում։ Մայրս ձեռքը տանում էր գոգնոցի մեջ, բուռ հանում կուտը և շաղ տալիս նրանց վրա։ Հավերը տկտկացնելով սկսում էին հատիկները քաղել գետնից։

Մեր վիթխարի թթենուց էլ ծտերն էին իջնում ու վախվորած որսում հեռու ընկած հատիկները։ Մայրս նրանց չէր քշում, հավերն էլ հաշտ էին նրանց հետ։ Ծտերն ուտում էին իրենց բաժինը և կշտանալով՝ թռչկոտում մեր թթենու ճյուղերին ու քաղցր ծլվլում։

Ու եթե պատահում էր, որ մայրս առավոտյան ուշացնում էր հավերին կուտ տալը, ես կախվում էի նրա փեշից ու ասում.

— Մայրի՛կ, դե շուտ արա, հավերին կուտ տուր, ծտերը մեղք են։







# ԶԱՏԻԿԸ

ԴԱՆՈՒՏԱ ԳԵԼՆԵՐՈՎԱ

Այն ո՞վ է ճոճվում կապույտ զանգակածաղիկների վրա։ Հա՛, զատիկն է, փոքրիկ զատիկը։ Ահա նա բացեց իր թևիկները և թռչում է մեր կողմը։ Ահա մեր աչքերից անցավ նա իր կարմիր թիկնոցով։ Թիկնոցի վրա փոքրիկ պուտեր կան, փոքրիկ սև պուտեր. դրանք Մարիսիա որբուկի արցունքներն են։

Հին ու վայրի արտով անցնում էր փոքրիկ որբուկը, երբ հանդիպեց սարսափելի կախարդին։ Որբուկը չուզեց նրան ծառայել, և չար ծերուկը փչեց իր ոսկե եղջյուրը։ Այդ ժամանակ անտառում քամի բարձրացավ, սարսափելի որոտ, ու կայծակը փայլատակեց։ Երկնքից ամպերի վրա լողալով եկավ կախարդի քույրը և փոքրիկ որբուկին զատիկ դարձրեց։ Լաց եղավ փոքրիկ որբուկը, և նրա արցունքները կաթեցին կարմիր թիկնոցի վրա։ Երբ զատիկ գտնես, թռցրու վեր, թող թռչի նա բարձր՝ դեպի ամպերը և լազուր երկինքը։

Արևը ոսկի տուփիկի մեջ կպահի զատիկին և գուցե մի օր հեռացնի նրանից չար կախարդանքը։

Թարգմ. ՀԵՂԻՆԵ ՄՈՒՐԱԴՅԱՆ



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ









# ՖՐԱՆՍՈՒԱ ՄԻԼԼԵ

Ժան Ֆրանսուա Միլլեն 19-րդ դարի ֆրանսիական խոշորագույն նկարիչներից է: Ծագումով լինելով գյուղացի, նա իր ամբողջ ստեղծագործական տաղանդը նվիրեց գյուղական կյանքի պատկերմանը, իր առաջ խնդիր դնելով՝ գովերգել աշխատանքի մեծ պոեզիան:

Լրացավ Ֆրանսուա Միլլեի ծննդյան հարյուր հիսուն տարին:

ՀՈՎՎՈՒՀԻՆ



ԻՐ ԵՐԵԽԱՆԵՐԻՆ ԿԵՐԱԿՐՈՂ ԳԵՂՋԿՈՒՀԻՆ

# ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Բոլորը գիտեն, որ արևը դեղին է, իսկ արևածագի և մայրամուտի ժամանակ՝ կարմիր: Բայց 1950 թվականի սեպտեմբերին Գերմանիայում, Ֆրանսիայում, Շվեյցարիայում և Դանիայում նըկատել են երկնագույն արև: Պատճառն այն է, որ Կանադայի տափաստանների և անտառների հըրդեհումից հետո մթնոլորտի վերին շերտերը հագեցվել են ծխով ու մրով, որի հետևանքով էլ արևի գույնը փոխվել է:

Այդպես էլ, 1883 թվականին, Կրակատաու վիթխարի հրաբխի ժայթքումից հետո, նկատվել է կապույտ արև, իսկ 1815 թ. Հնդկական օվկիանոսում, Տամբորա հրաբխի ժայթքումից հետո, մարդիկ տեսել են կանաչ արև: Երբեմն երկնքում միաժամանակ երևում են մի քանի գույնի արև: Սառնամանիքների ժամանակ հաճախ կարելի է տեսնել երեք արև, մեկը՝ իսկական, իսկ երկուսը՝ կեղծ: Ինչի՞ց են դրանք առաջանում: Գիտնականները գտել են, որ արևի ճառագայթները՝ անցնելով օդում գտնվող սառցե բյուրեղների միջով, բեկվում են և ստեղծում կեղծ արևներ: 1868 թ. ապրիլի 9-ին Ուրալում նկատել են 8 արև:

* * *

Փորթուգալական մի քաղաքում բնակիչները շատ են հպարտանում իրենց այգիներում ապրող թռչուններով և հոգ են տանում նրանց համար: Փետրավորների պահպանության հարցը նույնիսկ քննության է առնվել քաղաքային իշխանության կողմից, որտեղ որոշվել է... յուրաքանչյուր կատվի վզից կախել զանգ, որը և թռչուններին կազդարարի թշնամու մոտենալը:

* * *

Պանամայի ջրանցքի մոտերքում աճում է մի տեսակի ծառ, որի ոչ մեծ պտուղներն այնքան յուղոտ են, որ տեղի բնակիչները մեջտեղը պատրույգ են անցկացնում, վառում և դրանով լուսավորում բնակարանները: Այդպիսի մեկ «մոմը» վառվում է 3-5 ժամ և ի տարբերություն սովորական մոմերի, մուր չի տալիս:

* * *

Մարդը օրվա ընթացքում կատարում է մոտ 20 հազար քայլ, մեկ տարվա մեջ՝ 7 միլիոն, իսկ 70 տարվա ընթացքում համարյա թե 500 միլիոն քայլ: Ուրեմն մարդն իր կյանքի ընթացքում կարող է 9 անգամ պտտվել երկրագնդի շուրջը (հասարակածով) կամ՝ հաղթահարել Երկրից Լուսին ընկած տարածությունը:





Լրացավ հայ տաղանդավոր բանաստեղծ ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԻՐԱԶԻ ծննդյան 50 տարին: Սովետական գրականության զարգացմանը մատուցած ծառայությունների համար ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահությունը նրան պարգևատրեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԻՐԱԶ

## ՏԻԵԶԵՐՔԻ ՏԻՐԱԿԱԼԸ

*(Բնությունը՝ մարդու մասին)*

1

Գիշերն անուշ զրուցեցին
Ծաղիկները մեղմանուշ,
Բայց վերջն անվերջ մի վեճ բացին,
Իրար դիպան վարդ ու փուշ:
— Ո՞վ է հզորն՝ այս աշխարհի
Էակների մեջ բոլոր,
Բայց ամենից պարզ ու բարի,
Բայց ամենից լուսավոր...
— Մարդն է,— ասաց վարդը զվարթ:
— Չէ, մարդը չէ,— փուշն ասաց,—
Մարդն է քաղում տատասկ ու վարդ,
Մարդը չար է ու անսանձ:
— Չէ, մենք մարդու կրծքին ելնում՝
Զարդ ենք դառնում, ոչ գերին,
Զմայլված ենք ականջ դնում
Մարդու սրտի ձայներին:
Խոսում է մարդն իր սրտի հետ:
Քուն թե արթուն մտորում՝
Թե ինչ անի, որ այսուհետ
Բարին ծաղկի աշխարհում,
Թե ինչ անի, որ մայր հողից
Միշտ ծաղիկներ բարձրանան,
Թե ոնց անի, որ վարդերից



Զքվեն փշերն հավիտյան։
— Չէ, մարդը չէ,— շուշանն ասաց,—
Մարդը ծաղիկ է քաղում...
Հավքն է, որ միշտ երկինք ելած՝
Գարնան գովքն է գեղգեղում։
Չի խառնվի հավքը երբեք
Չար ու բարուն աշխարհի
Եվ, թե ցած է գալիս մեկ-մեկ,
Բայց մեզ չարիք չի բերի։
Ո՞վ կարող է հզոր արծվից
Գեթ մի փետուր բերել ցած.
Նա է երկրի արքան անբիծ,
Ով թևավոր է ծնված։
— Իմ շուշանիկ, քո հավքն էլ չէ,—
Նունուֆարը շշնջաց,—
Տես, բաց գլխիս ճյուղն կկանչե
Ագռավն՝ աչուն չմտած,
Մեկ էլ տեսար՝ խեղճ արտույտին
Տարավ անգղն արտերից։
Չես տարբերի կտուցն արծվի
Մարդու ձեռքի կեռ թրից։
— Որ հավքն էլ չէ, իմ եղնիկն է,—
Մանուշակը ժպտաց հեզ,—
Նա հավքի պես սուրալ գիտե,
Բայց թե՝ չար չէ հավքի պես...—
Բայց կարկամեց մանուշակը՝
Խոսքը բերանը մնաց.



Եղնիկների երամակը
Եկավ, անցավ սրընթաց,
Չլսեց էլ մանուշակին,
Ծաղկունքն արավ ոտնատակ.
Փշերն անգամ հառաչեցին.
— Վա՜յ մեզ... շշմած մանուշակ։—
Ու մինչ ծաղկունքն ուշքի գային՝
Փշի ծաղիկն ընկավ մեջ.
— Տեսա՞ք անփուշ ձեր արքային,
Բայց իմն ասեմ պարզ ու պերճ.
Ո՛չ երկնքի թևավո՛րն է,
Ո՛չ էլ մարդն է խորամանկ,
Ո՛չ ծաղիկն է, ո՛չ եղնիկն է,
Ո՛չ արևն է, ո՛չ լուսնյակ։
Առյուծն է տեր իշխանը մեր,
Նա չի ծաղկին ձեռք տալիս,
Բայց դողում են սար ու ձորեր՝
Առյուծը ձագ ծնելիս։
Ով ուժեղ է՝ նա է արքան
Տիեզերքի անսահման.
Սասանում են անտառ ու լեռ,
Երբ որսի է նա թռչում,
Թաքնվում է մարդն անվեհեր,
Երբ առյուծն է մռնչում...
— Չէ՜,— գոռացին միաբերան
Վարդ ու ծաղկունքն իմաստուն,—
Առյուծն ի՞նչ է, մարդը նրան
Շուն է դարձնում, տանում տուն,
Կամ կապիկի տեղ է դնում,
Պար է ածում առյուծին,
Իրավ մարդն էլ է չարանում,
Բայց նա թույն չէ մեր հացին։
— Թո՛ւյն է,— գոռաց փուշը կրկին։—
Վարդերն ասին.—Դո՛ւ ես թույն,
Որ խայթում ես դեռ ամենքին՝
Փուշ կմնաս միշտ անտուն։—
Ու լռեցին ծաղիկները,
Փուշը կրկին տաքացավ.
— Ո՞վ է հապա երկրի տերը...—
Ու բնդեղը վեր կացավ.
— Փիղն է, փիղն է տերը երկրի,
Ամենքիս վախն է վկա,
Փիղն է արքան էակների՝
Փղից հզոր բան չկա։
Նա է իշխում լեռ ու անտառ,
Իշխում վագրին ու մարդուն.
Մարդն ինչ է որ. փղի դեմ՝ գառ,
Մարդը՝ թեկուզ իմաստուն։
Երբ առյուծն է տեսնում փղին՝
Թաքնվում է գառան պես։—
Բայց փիղն հասավ ու բաղեղին
Կարծես ասաց՝ ահա ես.
Հարբածի պես արավ իսկույն
Բաղեղին էլ ոտնատակ,
Ճզմեց ծաղկունքն հազարագույն
Ուժի արքան այս վայրագ։
Եկավ մթնում,
Դիպավ կաղնուն,
Կաղնին ծռվեց գլխահակ,
Ահից փախավ աղվեսն իսկույն,
Որ քնած էր կաղնու տակ։
Ու կողկողնճաց
Արջն էլ զարկված՝
Գնաց՝ վերքը կապելով,
Հառաչում էր կաղնին ծռված՝
Կանաչ արցունք թափելով.
— Այս ի՞նչ բան էր, ո՞ւր է մարդը,
Այ թե մարդը կիմանա՜ր...—
Մահից հազիվ պրծած վարդը
Մրմնջում էր վշտահար,
Տրտնջում էր.— Ո՞ւր է մարդը,—
Եվ այտերին արյուն կար։
Ու հեռացավ փիղ անպետքը,
Ո՜վ սև գիշեր, քեզ նման,
Թողած ամեն ոտնահետքը՝
Հազար ծաղկի գերեզման...
Ու պապանձվեց վենն իմաստուն,
Ահից լռեց վարդն անգին,
Երազի մեջ, քո՛ւն թե արթուն՝
Աչքը մարդու ճամփեքին...



2

Երկրորդ գիշերն վեճն սկսվեց,
Հովերն էին ունկնդիր,
Գիշերն էլի հին վեճն հուզվեց,
Ջրերն էին ունկնդիր,
Ծառերն էին, սարերն էին,
Աստղերն էին ունկնդիր։
Խոցված սրտով վարդը խոսեց,
Ամենքն էին ունկնդիր.
— Աչքով տեսա՞ք, թե ինչ արավ,
Ով է անխիղճ, բայց հսկա,
Մինչդեռ բանը խելքն է իրավ,
Ու խելքից վեր բան չկա.
Մարդն է միակ բանականը՝
Էակների մեջ պես-պես,
Թեկուզ մեր խեղճ այգեպանը,
Որ միշտ կյանք է տալիս մեզ։
Մարդն է վիշապ օձին խեղդում,
Վանդակ դնում վագրին չար,
Խելքով ամեն չարի հաղթում...
— Բայց ինքն էլ է մնում չար,
Կռիվ գցում ողջ աշխարհքում...
— Շատ մի՛ փչի, բացբերան,
Մարդու ձեռքին քարն է ծաղկում,
Ո՞նց չգովես էլ նրան։
Հեզ կատու է վագրը դառել
Մարդու բարի ձեռքի տակ՝
Արծիվները ուսին թառել,
Հավ են դառել գլխահակ։
Մարդն ինքն իրեն թև է տվել՝
Գրավել բերդն երկնքի,
Մարդուն երկինքն է խոնարհվել,
Մարդն է արքան ամենքի։
Հավք չի հասնի մարդու թևին,
Մտքի թևով է թռչում,
Եվ թե տխրած տեսնեք արծվին՝
Մարդ լինել է անրջում...
Քանի՛ դարեր փիղն էլ ահա
Շղթայի տակ է մարդու,
Փղից մեծն է եղել՝ չկա,
Մամոնտ էլ չե՛ս տեսնի դու։
Չի դիմացել կյանքի կռվում,
Յոթ փղի չափ է եղել,
Ո՞վ իմանա, ո՛ր անձավում
Ոսկորներն է հետք թողել։
Մինչ մարդն ահա, ո՛վ անգետներ,
Անցել հազար ցավի ծով,
Ծաղկեցընում է դաշտ ու լեռ,
Ինքն էլ ապրում նրանցով...
— Ո՛վ կույր, շատ ես մարդուն գովում,—
Փուշը նորից քրքջաց,—



Մարդը նավ է արյան ծովում՝
Առագաստով մշտաբաց.
Հալածում է որսկան դառած
Մարդը անմեղ եղնիկին,
Հավքն երկնքից բերում է ցած,
Որ շամփրի կրակին...
— Չէ, վաղուց էր նա վայրենի.
Էլ հինը չէ անիրավ,
Էլ մարդն երբեք այն չի անի,
Ինչ որ երեկ փիղն արավ...
Վա՞տ է արել, որ եղնիկին
Փրկել գայլ ու մամոնտից՝
Տուն է տարել... Նա էլ մարդուն
Բաժին կտա իր կաթից..
Ու թե մարդը չար է այդքան,
Շունն ինչո՞ւ չի հեռանում,
Ո՞վ չի տեսել, որ արջն անգամ՝
Մարդուց բան է սովորում։
Էլ ո՞րն ասեմ, մեզ կյանք տվող
Այգեպանն է մարդը պարզ,
Շինականն է՝ հողը հերկող,
Օդաչուն է երկնահաս,
Հանքափորն է նա ոսկեքեր,
Նավավարն է ծովասիրտ,
Այն բանվորն է, որ անվեհեր,
Խորտակում է կյանքը բիրտ,
Որ նոր կյանք է աշխարհ բերում,
Որ բերել է՝ կբերի,
Շատ չի իշխի փուշն աշխարհում,
Փշին մարդ չի համբերի։
— Վարդը ճիշտ է, ու խոսք չունիմ,—
Հորոտ-մորոտն հայտնվեց,—
Բայց ամեն մեկն իր տեղն ունի
Տիեզերքում մեր այս մեծ.
Այն բարին չէ՞, որ իրենցով
Տիեզերքն են զարդարում
Թե՛ արևը լույս ու բոցով,
Թե՛ ծկնալի ծովն անհուն,
Թե՛ եղնիկը, թե՛ կարապը
Եվ թե՛ առյուծն իր գեղով,
Թե՛ ծովերի ջինջ անափը,
Թե՛ ամեն ազգն՝ իր ցեղով,
Թե՛ հավքերի անգահ արքա
Արծիվն իր վեհ թռիչքով,
Թե՛ աղբյուրներն հազարակնյա,
Թե՛ սիրամարգն իր պոչով,
Թե՛ ջրվեժը՝ վեհ ու վայրի,
Ադամանդյա իր բաշով,
Թե Արարատն՝ հայ աշխարհի՝
Մագնիսալեռ իր ուժով...
Էլ ո՞րն ասեմ՝ այս անհունի
Գրկում ամեն արարած
Իր ցեղն ունի, իր տեղն ունի՝





Կյանքն իրենով զարդարած։
Մրջյունն անգամ թե պակասեր
Տիեզերքից անսահման,
Իմաստուն մարդն իսկույն կասեր,
Թե պակաս է դեռ մի բան...—
Ու վեճի մեջ չիմացան, թե
Արևն ինչպես բարձրացավ,
Այգեպանը, խաղաղ ու վեհ,
Տաղավարից դուրս եկավ։
Ու վարդենին ասես գինով,
Կանաչն հանեց ու իսկույն
Կարմիր հագավ ու մեղմ ձենով
Այսպես դիմեց մեծ մարդուն.
— Դո՛ւ ես իշխանն այս աշխարհի,
Այս արևի նման բարի,
Ա՜խ, ոչ միայն քո մեծ կրծքին՝
Փառք է մեռնել քո ոտքի տակ...—
Ու մարդն իսկույն վարդի կողքին
Հողից քաշեց փուշ ու տատասկ,
Պոկեց, ձգեց իր ոտքի տակ...

— Ուխա՜յ, ուխա՜յ,— ծիծաղեցին
Ու նոր ազատ շունչ քաշեցին
Վարդ ու ծաղիկ, տերև ու խոտ,
Այգին մատաղ, դաշտը շաղոտ,
Խնդությունից վարդն արտասվեց։
Ու էակներն ամեն կողմից
Եկան մարդուն ողջունեցին,
Եղնիկները սար ու ձորից
Եկան մարդուն բոլորեցին,
Հավքերը վար իջան երկնից,
Իջան մարդուն բոլորեցին,
Ու գազաններն ամեն կողմից
Եկան մարդուն խոնարհվեցին,
Ձկներն անգամ ելան ծովից,
Ելան մարդուն բոլորեցին,
Ու փիղն եկավ ծանր ու մեծ
Ու շուռ տվեց իր կնճիթով,
Մարդու ճամփից ժայռերը մեծ,
Ու վեր ելավ մարդն անվրդով։
Ու մինչ մարդը վեր կնայեր,
Արծիվն իջավ մարդու ուսին.
— Այսքան բարձր չեմ եղել դեռ։
— Մարդն է արծիվ,— հավքերն ասին։
Ու վերջն առյուծն եկավ լռին,
Եկավ դրեց գլուխը ծեր
Մարդու մտքի ճամփաներին.
— Ես չէ, մարդն է առյուծը մեր։—
Ու այն օրից հող ու ծովից
Մարդն ամենքին գլխավորեց
Ու դեպի լույսն առաջնորդեց
Մարդն ինքն իրեն ու ամենքին՝
Տեր դառնալով տիեզերքին։

*Նկ. ՖԼՈՐԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



# ՓՈՔՐԻԿ ՋՐԱՐՋՈՒԿԸ ԵՎ ՆԱ, ՈՐ ՆՍՏԱԾ Է ԼՃԱԿՈՒՄ

*ԼԻԼԱՆ ՄՈՒՈՒՐ*
*(Ամերիկյան գրող)*

*Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ*

*Ջրարջուկը թեպետ փոքրիկ էր, բայց շատ քաջն էր։ Մի անգամ ջրարջուկ մայրիկը նրան ասաց.*

*— Այսօր լուսնկա գիշեր կլինի, դու կարո՞ղ ես մենակ գնալ և արագավազ առվակից ընթրիքի համար խեցգետին բերել։*

*— Իհարկե, կարող եմ,—պատասխանեց փոքրիկ ջրարջուկը։—Ես այնպիսի խեցգետիններ՝ կբռնեմ, որոնց նմանը դեռ երբեք դու չես կերել։*

*Թեպետ փոքրիկ էր ջրարջուկը, բայց շատ քաջն էր։*

*Գիշերը դուրս եկավ մե՜ծ, կլոր և շատ լուսավոր լուսինը։*

*— Փոքրի՛կ ջրարջուկ, գնալու ժամանակն է,— ասաց մայրիկը։—Այնքան կգնաս, մինչև հասնես լճակին։ Այնտեղ դու մի ծառ կտեսնես, որն ընկած է լճակի լայնքով մեկ։ Այդ ծառի վրայով կանցնես մյուս կողմը։ Խեցգետիններ բռնելու ամենալավ տեղը այնտեղ է։*

*Լուսնի պայծառ լույսի տակ փոքրիկ ջրարջուկը ճանապարհ ընկավ։ Նա այնքա՜ն երջանիկ էր, այնքա՜ն հպարտ։*

*Շուտով փոքրիկ ջրարջուկը հասավ մի այնպիսի տեղ, որտեղ բարձր ծառեր էին աճում։ Այնտեղ հանգստանում էր մի ծեր խոզուկ։*

*— Այդ ո՞ւր ես գնում այդպես մենակ,—հարցրեց ծեր խոզուկը։*

*—Գնում եմ արագավազ առվակից ընթրիքի համար խեցգետիններ բերեմ,— պատասխանեց փոքրիկ ջրարջուկը։*

*— Զգուշացի՛ր, փոքրի՛կ ջրարջուկ,—ասաց ծեր խոզուկը։— Դու չունես այնպիսի երկար ու սուր ասեղիկներ, ինչպիսիք ես ունեմ։*

*— Ես ոչ մեկից չեմ վախենում,— պատասխանեց փոքրիկ ջրարջուկը։*

*Նա փոքրիկ էր, բայց շատ քաջն էր։*

*Փոքրիկ ջրարջուկը շարունակեց ճանապարհը։ Սկզբում նա քայլում էր հանգիստ, մի քիչ հետո քայլերն արագացրեց, իսկ վերջում սկսեց ցատկոտել։*

*Արագավազ առվակին չհասած՝ նա հանդիպեց գիրուկ նապաստակին։ Նապաստակը քնած էր։ Նա աչքերից մեկը մի քիչ բացեց։*

*— Վա՜յ, այնպես վախեցրիր,—ասաց նա։—Այդ ո՞ւր ես այդպես գնում, փոքրիկ ջրարջուկ։*

*— Արագավազ առվակից խեցգետիններ բերելու,—հպարտ-հպարտ ասաց փոքրիկ ջրարջուկը։— Դա լճի այն կողմում է։*



*— Ո՜-օ՜-օ՜,—ասաց գիրուկ նապաստակը։— Իսկ դու Նրանից չե՞ս վախենում։*

*— Ումի՞ց վախենամ,—հարցրեց փոքրիկ ջրարջուկը։*

*— Նրանից, որ նստած է լճի մեջ,—ասաց գիրուկ նապաստակը։—Ես վախենում եմ։*

*— Իսկ ես չեմ վախենում,— ասաց փոքրիկ ջրարջուկը և շարունակեց ճանապարհը։*

*Վերջապես փոքրիկ ջրարջուկը տեսավ այն հաստ ծառը, որ ընկած էր լճակի լայնքով։ «Այս ծառի վրայով ես պետք է անցնեմ,—ինքն իրեն ասաց փոքրիկ ջրարջուկը։—Իսկ այնտեղ, այն ափին, ես խեցգետին կբռնեմ»։*

*Փոքրիկ ջրարջուկը ծառի վրայով սկսեց անցնել դեպի լճակի մյուս ափը։ Նա քաջ էր, միայն թե ինչո՞ւ հանդիպեց այդ գիրուկ նապաստակին։ Նա չէր ուզում մտածել Նրա մասին, որ նստած է լճակի մեջ, բայց չէր էլ կարողանում ինքն իրեն հանգստացնել։ Նա կանգնեց և նայեց։ Ինչ-որ մեկը նստած էր լճի մեջ։ Դա Նա էր։ Նստել էր այնտեղ ու նայում էր իրեն։ Փոքրիկ ջրարջուկը բոլորովին էլ ցույց չտվեց, որ վախեցավ և ծռմռեց մռութը։ Նա, որ նստած էր լճակում, նույնպես ծռմռեց մռութը։ Այդ ի՜նչ սարսափելի մռութ էր։ Փոքրիկ ջրարջուկը շրջվեց և, որքան ուժ կար ոտքերում, փախավ։*

*Նա այնպես արագ սլացավ գիրուկ նապաստակի կողքով, որ նորից վախեցրեց նրան։ Առանց կանգ առնելու, նա վազեց ծեր խոզուկի մոտ և ինչ որ տեսել էր, պատմեց նրան։*

*— Իսկ դու մի փայտ վերցրու հետդ։ Վերադարձիր և ցույց տուր, որ դու մեծ փայտ ունես։*

*Փոքրիկ ջրարջուկը շատ էր ուզում խեցգետին տանել տուն։ Դրա համար էլ վերցրեց մի փայտ ու նորից գնաց դեպի լճակը։*

«Գուցե Նա արդեն գնացել է»,—ինքն իրեն ասաց փոքրիկ ջրարջուկը։ Ո՜չ, Նա չէր գնացել, Նա առաջվա պես նստած էր լճակում։ Փոքրիկ ջրարջուկը վեր բարձրացրեց մեծ փայտը ու սպառնաց։ Բայց լճում նստածի մոտ էլ փայտ կար, մեծ, շա՜տ մեծ փայտ։ Եվ Նա էլ փայտով սպառնաց ջրարջուկին։ Փոքրիկ ջրարջուկը վախից փայտը ցած գցեց ու փախավ։

Նա մի շնչով վազեց տուն, կանգ չառնելով ո՛չ գիրուկ նապաստակի, ո՛չ էլ ծեր խոզուկի մոտ։

Փոքրիկ ջրարջուկը ամեն ինչ պատմեց մայրիկին։

— Օ՜, մայրիկ,—վերջում ավելացրեց նա,—ես այնպե՜ս էի ուզում ընթրիքի համար խեցգետին որսալ, և այն էլ՝ մենակ։

— Եվ կբերես,—ասաց ջրարջուկ մայրիկը։ —Ետ վերադարձիր, փոքրիկ ջրարջուկ, բայց այս անգամ ո՛չ մռութդ ծռմռիր և ո՛չ էլ փայտով սպառնա։

— Իսկ ի՞նչ անեմ,—հարցրեց փոքրիկ ջրարջուկը։

— Ժպտա՛, միայն ժպտա՛,— ասաց ջրարջուկ մայրիկը։—Գնա և ժպտա Նրան։

Փոքրիկ ջրարջուկը այնքան ուրախացավ, որ սկսեց բարձրաձայն ծիծաղել։ Եվ նրան թվաց, որ Նա, որ նստած էր լճակում, նույնպես բարձրաձայն ծիծաղում է։

«Արդեն Նա ինձ բարեկամ է»,—ինքն իրեն ասաց փոքրիկ ջրարջուկը։—Հիմա ես կարող եմ անցնել մյուս ափը»։ Եվ նա ծառի վրայով վազելով անցավ մյուս կողմը։

Այնտեղ, արագահոս առվակի ափին, փոքրիկ ջրարջուկը սկսեց խեցգետին որսալ։ Շուտով նա այնքան խեցգետին բռնեց, որ հազիվ էր կարողանում տուն տանել։ Նա վազելով անցավ ընկած ծառի վրայով։ Այս անգամ փոքրիկ ջրարջուկը ձեռքով արեց Նրան, որ նստած էր լճակում, Նա էլ էր ձեռքով անում։

Փոքրիկ ջրարջուկը ամբողջ ուժով վազեց տուն։ Մայրիկի ասելով իրենք դեռ երբեք այդպիսի համեղ խեցգետիններ չէին կերել։

— Սրանից հետո, երբ որ ուզեմ, կարող եմ մե-



—Եվ ուրիշ ոչի՞նչ,—հարցրեց փոքրիկ ջրարջուկը։—Դու համոզվա՞ծ ես։

—Այդքանը միայն,—ասաց մայրիկը։—Ես համոզված եմ։

Եվ ահա փոքրիկ ջրարջուկը նորից կտրեց-անցավ ամբողջ ճանապարհը։ «Գուցե Նա արդեն գնացե՞լ է այնտեղից»,—անցավ նրա մտքով։

Ո՜չ, չի գնացել։ Նա առաջվա պես նստած էր լճակում։ Փոքրիկ ջրարջուկը ինքն իրեն ստիպեց, որ նայի ջրին։ Հետո ինքն իրեն ստիպեց, որ ժպտա Նրան։ Եվ Նա, որ նստած էր լճակում, նույնպես ժպտաց։

նակ գնալ այնտեղ,—ասաց փոքրիկ ջրարջուկը։—Ես այլևս չեմ վախենում Նրանից։

— Ես գիտեմ,—ասաց ջրարջուկ մայրիկը։

— Նա, որ նստած է լճակում, բոլորովին էլ վատը չէ,—ասաց փոքրիկ ջրարջուկը։

— Ես գիտեմ,—ասաց ջրարջուկ մայրիկը։

— Իսկ ո՞վ է Նա, որ նստած է լճակում, ասա,—խնդրեց փոքրիկ ջրարջուկը։

Մայրիկը ծիծաղեց և ամեն ինչ բացատրեց նրան։

Ռուսերենից թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆԸ



# Կապույտ ՀՈՒԼՈՒՆՔԸ

*ՄԱՐԻԱ ԿՐՑՈՒԳԵՐ*

## ՄԻ ՓՈՔՐ ԷԼ ՀԱՐԵՎԱՆՆԵՐԻ ԵՎ ԱՆՁՐԵՎՈՏ ՕՐՎԱ ՄԱՍԻՆ

*Ե՛վ Կարոլինկայենց շենքում, և՛ նրա հարևան տներում շատ երեխաներ են ապրում։ Դե, բոլորի մասին չենք կարող պատմել. կպատմենք միայն նրանց մասին, ում հետ որ Կարոլինկան բարեկամություն հաստատեց։ Եկեք, ուրեմն, սկսենք Կարոլինկայի մտերիմներից։*

*Նրանք երեքն են։ Այս եռյակից, առաջին հերթին, իհարկե, Պետրիկի անունը պետք է տալ։ Նա ապրում է երրորդ հարկում՝ Կարոլինկայենց անմիջապես վերևում։ Կարոլինկան շատ է մտերմացել Պետրիկի հետ, չնայած որ նա տղա է, կես տարով մեծ է իրենից և արդեն չորրորդ դասարան է փոխադրվել։ Որպեսզի Պետրիկի մասին ավելի լավ պատկերացում ունենաք, ասենք, որ նա Կարոլինկայից ավելի բարձրահասակ է, շիկավուն մազեր ունի, հետաքրքրվում է աշխարհագրությամբ և շատ է սիրում կարդալ։ Մյուս հարևանը, որի հետ Կարոլինկան մտերմացավ, Լեշեկն է։ Լեշեկն էլ է երրորդ հարկում ապրում, միայն թե սանդուղքի մյուս կողմում, և մի շատ սիրունիկ քույրիկ ունի։ Անունը Յանյա է, և դեռ դպրոց չի գնում։ Ինչ արած, այնպես ստացվեց, որ ամենամոտ հարևանները տղաներ դուրս եկան։ Իսկ աղջիկները, որոնց հետ Կարոլինկան արդեն մի փոքր ծանոթացել և խաղում է, հարևան տներում են ապրում։ Այդ տներում տղաներ էլ են ապրում, միայն թե նրանք մի տեսակ՝ լավը չեն։ Իսկ ինչ վերաբերում է աղջիկներին, ապա նրանցից մեկը՝ Դորոթան, սև հյուսքեր ունի և Կարոլինկայից մի քիչ մեծ է։ Երկրորդի անունը Ագասյա է. նա ճիշտ Կարոլինկայի հասակակիցն է և մազերը ձիու պոչի նման կապում է գագաթի վրա։ Երկուսն էլ սիրում են կանգնել փողոցի մյուս կողմում գտնվող խաղալիքների խանութի ցուցափեղկի առաջ և դատողություններ անել, թե ով ինչ խաղալիք կուզենար ունենալ։ Իհարկե, լավ կլիներ այստեղ հիշատակել նաև մի քիչ ավելի հեռու ապրող հարևաններից մի քանիսին։ Ա՛յ, օրինակ, այն երկու տղաներին։ Կարոլինկան նրանց տանել չի կարող, որովհետև նրանք միշտ ծաղրում են իրեն։ Բայց բանն այն է, որ նրանք իրոք վատ են. մյուս երեխաներին էլ հանգիստ չեն տալիս։ Այդ տղաները եղբայրներ են, մեկի անունը Վալդեկ է, մյուսինը՝ Ռոբերտ։*

*Հարևանների մասին էլ այսքանը։ Մի բան էլ ասեմ. արդեն մի քանի օր է, ինչ Կարոլինկայենց ընտանիքում մի նոր անդամ է ավելացել։ Դա մի փոքրիկ, մոխրագույն փիսիկ է, սպիտակ դնչիկով և վարդագույն քթիկով։ Նա երկար բեղիկներ ունի և շատ է սիրում խաղալ։ Անունն էլ՝ Գրացիա։ Մորաքույրն է դրել անունը։*

*Բայց մեր պատմության մեջ սա այնքան էլ կարևոր իրադարձություն չէ։ Ամենակարևորը՝ անձրևոտ օրն էր։ Դա այնպիսի մի օր էր, որ կարծես աշխարհում ամեն ինչ իրար էր խառնվել։ Երկինքը գորշ էր։ Այնպես էր մթնել, որ առավոտյան, թեև ամառ էր, ստիպված լույսը վառեցին։ Բարակ անձրև էր մաղում և փողոցներում անհագին ջրափոսեր էին գոյացել։*

*— Տանը հաց չկա,— հանկարծ հիշեց Ագատա մորաքույրը։*

*Ինչ արած, Ագատա մորաքույրը շարունակ դժգոհում է հոդացավից՝ ուրեմն նա չի կարող գնալ։ Հայրիկն ու մայրիկն էլ ժամանակ չունեն, այնպես որ հաց գնելը Կարոլինկայի պարտականությունների մեջ էր մտնում։ Այսօր, ինչպես ասացինք, Կարոլինկան ստիպված եղավ հրաժարվել ցուցափեղկի խաղալիքներին նայելուց։ Նա արագ տուն վերադարձավ և մորաքույր Ագատային մեկնեց հացով լի պայուսակը։*



*— Ի՜նչ հիանալի հաց ես բերել,— գովեց Կարոլինկային մորաքույրը,— իսկ մանրն ո՞ւր է։ Հո չե՞ս կորցրել։*

*— Ինչո՞ւ պետք է կորցնեի,— նեղացավ Կարոլինկան։*

*Մանրը զնգզնգում էր*

---

*Սկիզբը՝ նախորդ համարում.*

անծրևանոցի գրպանում։ Կարոլինկան ձեռքը տարավ գրպանը։ Մի րոպե, իսկ ա՞յս ինչ է՝ գրպանի անկյունում ընկած։ Այնքան էլ փոքր է, որ հանել չի լինում, աստառի հետևը ընկած չլինի՞։ Մի րոպե, մի րոպե։ Օ՜, ահա։ Բայց չէ՞ որ սա երկնագույն հուլունքն է։

— Կարոլինկա,—ձայն տվեց մայրիկը,—ձեռքերըդ լվա և եկ նախաճաշելու։

— Հիմա գալիս եմ,—պատասխանեց Կարոլինկան և վազեց լողարան։

— Հիմա ես սրան կլողացնեմ,— հանկարծ վճռեց Կարոլինկան։

Հուլունքը աջ ձեռքում բռնած՝ նա արագ-արագ օճառեց ձեռքերը։ Օճառի փրփուրը գնալով շատացավ, իսկ պղպջակները մեծանում էին ու մեծանում։

— Ախ, ի՜նչ հաճելի է լողանալը,— անսպասելիորեն մի բարակ և հաճելի ձայն լսվեց.— ի՜նչ հաճելի է։ Քանի՜ տարի է ջրի երես չէի տեսել։

Կարոլինկան զարմացած չորս կողմը նայեց։ Բայց լողարանում ոչ ոք չկար։

— Եթե կարելի է, մի անգամ էլ այդ հոտավետ օճառով լողացրեք,—նորից լսվեց ձայնը։ Հիմա արդեն ձայնը հնչում էր մեղմ ու երազկոտ։

— Ախ, այդ դո՞ւ ես խոսում... Երկնագույն հուլունք,—աչքերը լայն բացած՝ շշնջաց Կարոլինկան։

— Դե, վերջապես ճանաչեցիր,— շարունակեց հանդիմանել ձայնը, որ հիմա ավելի բարի էր հնչում։—Ես երախտապարտ եմ քեզ։ Դու ինձ դուրս բերեցիր հատակի մութ ճեղքից։ Ես ստիպված էի թաքնվել, որովհետև Ֆիլոմենան շարունակ հետապնդում էր ինձ։

— Ֆիլոմե՞նան,—զարմացավ Կարոլինկան, բայց իսկույն հիշեց.—Հա, սպասի՛ր, սպասի՛ր, Ֆիլոմենա... Ֆիլոմե՜նա... Որտե՞ղ եմ լսել այդ անունը։

— Ինքդ սպասիր,—անհամբեր պատասխանեց հուլունքը,—ավելի լավ կանես ուշադիր լսես ինձ։ Ես ուզում եմ խոսել քեզ հետ։

— Լավ,—անվստահ սկսեց Կարոլինկան,—բայց քեզ հետ մի տեսակ դժվար է զրուցել և շատ տարօրինակ է։ Ախր, դու այնքա՜ն փոքրիկ ես։

— Հը՞, դա քեզ խանգարո՞ւմ է,—հուլունքը ծիծաղեց արծաթե մեղմ քրքիջով,—դրան հիմա մի ճար կգտնենք։ Հապա նայի՛ր։

Ա՜յ քեզ հրաշք։ Հուլունքն սկսեց մեծանալ, հետն էլ քանի գնում՝ կորցնում էր իր երկնագույն երանգը, դառնում ավելի թափանցիկ։ Վերջն էլ օճառի պղպջակի նման մի բան դարձավ ու սկըսեց Կարոլինկայի ափի վրա թռչկոտել։

— Ախ, ինչ հաճելի՜ է։ Քանի՜ տարի է անշարժ պառկած էի։ Թույլ տուր մի երկու անգամ էլ թռչկոտել։

— Խնդրեմ,—համաձայնեց զարմանքից ապշած Կարոլինկան։

Երկնագույն լույսով առկայծող օճառի պղպջակը շարունակեց ուրախ թռչկոտել, այն էլ ոչ թե մեկ կամ երկու, այլ ամենապակասը մի հինգ անգամ։ Հետո իջավ Կարոլինկայի ափի վրա։

— Հիմա քեզ մի շատ կարևոր բան պիտի ասեմ,—ձայնն այժմ արդեն շատ հանդիսավոր էր հնչում։—Լսի՛ր, Կարոլի՛նկա։ Մի րոպե հետո ես նորից հուլունք կդառնամ, որովհետև չեմ կարող երկար ժամանակ օճառի պղպջակ մնալ, ինձ այդ հազվադեպ է հաջողվում։ Աղաչում եմ, ինձ վայր չգցես, թե չէ կարող եմ էլի ինչ-որ մի անցքի մեջ ընկնել և տասնյակ տարիներով մնալ այնտեղ։ Ես



ուզում եմ, որ դու չմոռանաս մի շատ կարևոր բան՝ ես միշտ պատրաստ եմ կատարել քո ցանկությունները։

— Կատարել իմ ցանկություննե՞րը,—զարմացավ Կարոլինկան։—Ինչպե՞ս թե։ Չեմ հասկանում...

— Ա՜խ, Կարոլինկա,—անհամբերությամբ ասաց հուլունքը։—Ուշի-ուշով լսիր ինձ, ախր ես շատ պարզ եմ խոսում. ես կարող եմ կատարել այն մարդու բոլոր ցանկությունները, ով ինձ կբռնի իր ձեռքում։

— Կարոլի՜նկա, Կարոլի՜նկա,—անսպասելիորեն ընդհատեցին նրանց զրույցը։ Այդ մայրիկն էր ձայն տալիս սենյակից.— Ի՞նչ ես անում այսքան ժամանակ։ Բավական է ջրերի հետ խաղաս։

— Մայրիկը, մայրիկը կանչում է,—շշնջաց Կարոլինկան։

Օճառի շողշողուն պղպջակը խոր հոգոց հանեց

և նորից մի երկնագույն հուլունք դարձավ, հասցընելով միայն ասել.

— Աղաչում եմ քեզ, լավ չորացրու և խնամքով պահիր։ Դե, ինչպե՞ս էր, քեզ դուր եկավ այսօրվա տաքսիի պատմությունը։

— Ա՜խ, ուրեմն այդ դու՞ չէիր,—ուրախացավ Կարոլինկան։

— Կարոլի՜նկա,—համբերությունից դուրս եկավ մայրիկը։

— Գալի՜ս եմ, գալի՜ս,—ձայն տվեց Կարոլինկան։ Նա արդեն չորացրել էր հուլունքը, որը շողշողում էր իր ապշեցուցիչ երկնագույն երանգով։

— Կարոլի՛նկա, վերջապես լվացի՞ր ձեռքերդ, թե՞ ոչ,—մայրիկը արագ բաց արեց լողարանի դուռը։

— Արդեն լվացվել եմ,—ասաց Կարոլինկան։

— Դե, ուրեմն գնա՝ առանց նազ ու տուզի կեր վարսակի շիլան։

— Լա՛վ, մայրի՛կ, հիմա կուտեմ,—համաձայնեց Կարոլինկան, ձեռքի մեջ ամուր սեղմելով հուլունքը։ Հետո, հենց այնպես, փործի համար նա արագ-արագ ասաց.

«Թող որ հենց հիմա վարսակի շիլան չեփվի»։

—Օհո՜, երևում է, Կարոլինկան վերջապես սկսեց սիրել այս հիանալի և օգտակար շիլան,— ուրախացավ մորաքույրը՝ դատարկ ափսեն տեսնելով։





## ԹԵ ԻՆՉ ԵՂԱՎ ՀԵՏՈ

«Չգիտեմ, ճիշտ արեցի, թե չէ,— ինքն իրեն մըտածեց Կարոլինկան,— ախըր, Ագատա մորաքույրը համոզված է, որ ես շիլան կերել եմ և դրա շնորհիվ էլ ուժեղ և առողջ կլինեմ։ Իսկ ես հա՛մ քաղցած մնացի, հա՛մ էլ խաբեցի իմ բարի մորաքրոջը։ Համենայն դեպս վաղը հարկավոր է շիլան ուտել,—դառնությամբ որոշեց Կարոլինկան,— ախր, չի կարելի ամեն մի դատարկ բանի համար հուլունքին օգնության կանչել»։

Միջանցքից փակվող դռան ձայն լսվեց։ Այդ հայրիկն էր՝ գնաց աշխատանքի։ Մայրիկը դեռ շարունակում էր սենյակը կարգի բերել, իսկ Ագատա մորաքույրը արդեն գնացել էր գնումների։ Մայրիկն էլ, ինչպես միշտ, շտապում էր։

— Մա՛յրիկ, դու շա՞տ կվերադառնաս,—հարցրեց Կարոլինկան։

— Ա՜հ, ինքս էլ չգիտեմ,—հոգոց հանեց մայրիկը։—Հիվանդանոցից հետո (մայրիկը հիվանդանոցում էր աշխատում) էլի տեղ ունեմ գնալու։ Եթե դու մի քիչ մեծ լինեիր, կարող էիր ինձ օգնել։ Բայց այդպիսի գործերի համար դու դեռ փոքր ես,— և մայրիկը կրծքին սեղմեց Կարոլինկային ու համբուրեց։

— Գիտե՞ս, մայրի՛կ, ես այնքան եմ ուզում շուտ մեծանալ և ամեն բանում օգնել քեզ,—ջերմորեն ասաց Կարոլինկան և ինքն էլ համբուրեց մայրիկի այտը։ Բայց մինչ Կարոլինկան կավարտեր իր այդ խոսքը, հանկարծ զգաց, որ իր հետ ինչ-որ տարօրինակ բան է կատարվում։

— Ես հաճույքով կօգնեմ քեզ, մայրի՛կ,—կրկնեց նա։ Եվ հանկարծ նկատեց, որ ինքը հասակով մայրիկից բարձր է։

— Ներեցե՛ք, բայց ես ձեզ չեմ ճանաչում,— զարմացած բացականչեց մայրիկը՝ մի փոքր ետ հրելով Կարոլինկային։—Դուք հավանաբար մեր հարևանի՞ն եք փնտրում։ Հիմա աղջիկս ձեզ կուղեկցի... Կարոլի՜նկա...

Այդ րոպեին Կարոլինկան նայեց իր դիմաց կախված հայելու մեջ և համոզվեց, որ ինքը մի բարձրահասակ կին է դարձել, միանգամայն մեծավարի հագնված, գլխին՝ շլյապա։

— Կարոլի՜նկա,—կրկնեց մայրիկը,—որտե՞ղ ես։

— Ախր ես այստեղ եմ,—ասաց Կարոլինկան և ուզեց նորից գրկել մայրիկին։—Մի՞թե չես ճանաչում ինձ, մայրիկ։ Ախր, ես կախարդված եմ...

— Ի՞նչ եք ուզում ինձանից,—վախեցած բացականչեց մայրիկը։—Ներեցե՛ք, բայց ես ձեզ չեմ ճանաչում։

— Ախր, այդ ե՛ս եմ,—կրկնեց աղջիկը։ Եվ այն է, ուզում էր հուլունքին խնդրել, որ նա նորից իրեն փոքրիկ աղջիկ դարձնի, երբ հանկարծ զգաց, որ հուլունքը կորել է։ Ի՞նչ կլինի հիմա։

Իսկ մայրիկը գնալով ավելի էր զայրանում։

— Ներեցե՛ք, բայց ես շատ եմ շտապում, ես պետք է աշխատանքի գնամ։ Դուք, հավանաբար, մի ուրիշի հետ եք շփոթում ինձ,—և մայրիկը բացեց դուռը։

— Օ՜յ, օյ, ի՞նչ պիտի անեմ հիմա։—Կարոլինկան բոլորովին կորցրեց իրեն։ Իսկ մայրիկը թեթևակի բռնելով նրա արմունկը, դուրս բերեց միջանցք և բացատրեց.—Դռնապանը ներքևում է, նա ձեզ կօգնի գտնել նրան, ում որ փնտրում եք։

(Շարունակելի)

# ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Հայ գրողներից քչերն են հնարավորություն ունեցել բարձրագույն կրթություն ստանալ և այն էլ՝ հայրենիքից դուրս, աշխարհի զանազան երկրներում: Խաչատուր Աբովյանն ու Ստեփանոս Նազարյանը սովորել են Դորպատի համալսարանում, Ռափայել Պատկանյանն ու Գաբրիել Սունդուկյանը՝ Պետերբուրգում, Հովհաննես Հովհաննիսյանը՝ Մոսկվայում, Վահան Տերյանը՝ Մոսկվայում և Պետերբուրգում, Ավետիք Իսահակյանը՝ Լայպցիգում և ապա՝ Ցյուրիխում, Դերենիկ Դեմիրճյանը՝ Ժնևում, Սիամանթոն՝ Փարիզում՝ Ռուբեն



Սևակը՝ Լոզանում, Դանիել Վարուժանը՝ Գանի համալսարանում և այլն: Հակոբ Պարոնյանը միայն նախնական կրթություն է ստացել: Րաֆֆին ստիպված է եղել վեցերորդ դասարանից թողնել Թիֆլիսի գիմնազիան: Շիրվանզադեն, Նար-Դոսը և Մուրացանը հազիվ յոթնամյա կրթություն են ստացել: Միսաք Մեծարենցը և Վահան Թեքեյանը չեն վերջացրել միջնակարգ դպրոցը: Հովհաննես Թումանյանը գրաճանաչ է դարձել գյուղի քահանա Տեր-Սահակի մոտ, հետո 3 տարի սովորել է Ջալալօղլիում: Սակայն իսկական կրթություն նա ստացել է միայն Ներսիսյան դպրոցում, որը ստիպված է եղել թողնել՝ չորրորդ դասարանն էլ չավարտած: Ղազարոս Աղայանը իր սկզբնական կրթությունն ըստացել է Շամշուլդա գյուղում, ապա միայն մեկ տարի հաճախել Ներսիսյան դպրոցը:

Սակայն թե՛ Աղայանը և թե՛ մյուսները իրենց ուսման պակասը լրացրել են, Գորկու խոսքով ասած, կյանքի համալսարանում: Նրանք ինքնակրթության միջոցով ձեռք են բերել գիտելիքների վիթխարի պաշար:

* * *

Երևանի Մյասնիկյանի անվան գրադարանն այժմ ունի ավելի քան հինգ միլիոն 65 հազար գիրք: Եթե այդ գրքերը շարենք կողք-կողքի, ապա կստացվի մոտավորապես հարյուր մեկ կիլոմետր երկարությամբ մի գրաշարք: Եթե մարդ օժտված լիներ հավերժական կյանքով և ուզենար այդ բոլոր գրքերը կարդալ, ապա օրական մեկ գրքի հաշվով՝ նա պետք է 13 հազար 878 տարի շարունակ ընթերցեր: Սակայն վերջին գրքին հասնել հնարավոր չէր լինի, քանի որ գրադարանը տարեկան հարստանում է ավելի քան հարյուր հազար նոր գրքերով:

* * *

Հայ նշանավոր բանաստեղծներից ամենաերկարակյացը եղել է Նահապետ Քուչակը. նա մի ամբողջ հարյուրամյակ է ապրել: Իսկ ամենավաղամեռիկ բանաստեղծը եղել է Պետրոս Դուրյանը, որը մեռել է նույնիսկ քսան տարին չլրացած:

* * *

Ամերիկայի Միացյալ Նահանգներից Եվրոպա ուղարկված առաջին նամակը պատկանում է Քրիստափոր Կոլումբոսի որդու՝ Դիեգո Կոլումբոսի գրչին: Այդ նամակը գրված է 1512 թվականի հունվարի 12-ին և ուղղված է Իսպանիայի Թոլեդ քաղաքի եպիսկոպոսին: Դրանից չորս հարյուր տարի հետո, երբ հիշյալ նամակը Գերմանիայում աճուր-



դի է դրվում, Ամերիկայից գալիս է մի միլիոնատեր, վիթխարի գումար վճարելով՝ գնում է այն, և նորից Ատլանտյան օվկիանոսը ճեղքելով՝ վերադառնում է Ամերիկա, իհարկե, շատ ավելի կարճ ժամանակում, քան Կոլումբոսի նամակը ճամփորդել էր հակառակ ուղղությամբ...

* * *

Երբ մեծահռչակ նկարիչ Կլոդ Մոնեն մեկ աչքից կուրացավ, նրա բարեկամները սաստիկ հուզվեցին:

—Մի՛ անհանգստացեք,—նրանց ասաց Կլոդ Մոնեն,— ես դարձյալ կարող եմ նկարել, նույնիսկ եթե մյուս աչքս էլ կորցնեմ: Չէ՞ որ Բեթհովենը բոլորովին խուլ էր, երբ իր գլուխ-գործոցները ստեղծեց:

* * *

Մի ֆրանսիացի գրասեր բուկինիստական խանութից գնում է Բեռնարդեն դը Սեն-Պիերի «Պող և Վերգինե» գրքի մի հընատիպ օրինակը և կարդում է: Հասնելով գրքի վերջին էջերին, նա նկատում է, որ երկու թերթ իրար են կպած: Նա զգուշությամբ դրանք անջատում է իրարից, և ահա արանքից դուրս է սահում հինգ հազար ֆրանկի մի գումար, փաթաթված բարակ թղթի մեջ, որի վրա մատիտով գրված է. «Ընթերցող, քանի որ դու համբերություն ունեցար այս գիրքը մինչև այստեղ կարդալու, ապա դու արժանի ես այս գումարին»:

*Հավաքեց ՀԱՅԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԸ*

# 150





Պետերբուրգի վրա դանդաղորեն իջնում էր մայիսյան երեկոն: Բաց լուսամուտի մոտ կանգնել էր մի երիտասարդ զինվորական ու նայում էր դուրս: Այգու զմրուխտ սաղարթներից այն կողմ երևում էր սրանչելի Նևայի արծաթափայլ գոտին: Իսկ վերևում թխպոտ երկինքն էր: Նա մտազբաղ դիտում էր չվող ամպերին:

— Բավական է, Միշա, ի՛նչ ես էլի տարվել երկնքով, — ձայն տվեց սեղանի շուրջը նստածներից մեկը, որ եկել էր հրաժեշտ տալու աքսորավայր մեկնող իր ընկերոջը:

— Եկ այստեղ, Վա՛նյա, —կանչեց նրան զինվորականը, — տես ի՛նչ բանաստեղծական հոյակապ պատկեր է: Քամուց հալածված ամպեր... Անուղի, անդեկ ընթացք... Ինչքա՛ն նման է իմ վիճակին:

— Բայց մի՞թե ցարը մի՛ յն քեզ հետ է այդպես վարվել: Համբերիր, Միշա, արիացիր, աշխարհն այսպես չի մնա, — մխիթարում էր նրան ընկերը: —Դեռ լավ է, որ աքսորավայրդ Կովկասն է և ոչ թե Սիբիրը:

Ո՞վ էր Միշան, որին ցարը աքսորում էր ռուսական մայրաքաղաքից և ինչի՞ համար:

1837 թվականի փետրվարին ցարական գնդակից սպանվեց ռուս մեծ գրող Ալեքսանդր Պուշկինը: Փոթորկվեց ամբողջ Ռուսաստանը: Օրեցօր աճում էր ազնիվ հայրենասերների վրդովմունքն ու ցասումը ընդդեմ Պուշկինի դահիճների: Կառավարությունը վախենալով վերահաս ապստամբությունից, սպառնում էր անողոք կերպով պատժել Պուշկինի համախոհներին և բոլոր նրանց, ովքեր կհամարձակվեին զովերգել նրան:

Սակայն ինչպիսի սպառնալիք էլ որ տար նիկոլաևյան ռեժիմը, նա ի վիճակի չէր լռեցնելու և խեղդելու առաջավոր միտքը:

Այդ մտքերի լավագույն արտահայտիչը եղավ 23-ամյա մի երիտասարդ զինվորական, ապագա մեծ բանաստեղծ Միխայիլ Լերմոնտովը: Նա գրեց իր նշանավոր «Պոետի մահը» բանաստեղծությունը, որը ձեռագիր վիճակով արագորեն տարածվեց Ռուսաստանով մեկ: Ցարական կառավարությունը դատական գործ սկսեց այդ ոտանավորի շուրջը: Բանտարկվեցին նրանք, ովքեր համարձակվել էին արտագրել ձեռագիրը և տարածել: Իսկ հեղինակը աքսորվեց: Ցարը նրան ավելի խիստ կպատժեր, եթե չմիջամտեին հեղինակավոր մարդիկ: Մարտի 10-ին Լերմոնտովը մեկնեց աքսորավայր՝ Կովկաս:

Սակայն աքսորը չընկճեց Լերմոնտովին: Կովկասի բնությունը արդեն հարազատ էր նրան: Երեք տարեկան էր Միշան, որ զրկվեց մորից: Նա առողջ օրգանիզմ չուներ, և հոգատար տատը նրան հաճախ էր տեղափոխում Կովկաս: Բայց այժմ նա այդ սքանչելի բնության գիրկն էր եկել ոչ որպես անհոգ պատանի, այլ ժողովրդի խոհերով ու տառապանքներով ապրող աքսորական մի բանաստեղծ: Լերմոնտովը անվերջ շրջում էր, բարձրանում լեռները, հիանում բնության գեղեցկությունններով և մերթ ընդ մերթ նկարում գրավիչ տեսարանները:

Մեկ տարին չլրացած՝ նա վերադարձավ Պետերբուրգ: Բայց ահա Նիկոլայ թագավորի հրամանով Լերմոնտովը կրկին աքսորվում է:

Լերմոնտովը նորից Կովկասում է, Տենգինյան հետևակային գնդում, այն զորամասում, որն ամենից վտանգավորն էր՝ շարունակ պատերազմական գործողությունների մեջ գտնվելու պատճառով: Բանաստեղծը մի քանի անգամ անձամբ մասնակցել է լեռնականների դեմ մղվող կռիվներին և ցուցաբերել բացառիկ ճարպկություն ու խիզախություն: Հրամանատարությունը նրան նույնիսկ ներկայացրեց պարգևատրության: Սակայն Նիկոլայ Առաջին թագավորը, որ Լերմոնտովին չէր սիրում՝ նրա ողջ գործունեության և հատկապես այդ օրերին լույս տեսած «Մեր ժամանակի հերոսը» վեպի համար, մերժեց հրամանատարության միջամտությունը և գաղտնի կարգադրեց այնպես անել, որ Լերմոնտովը միշտ մասնակցի ճակատային կռիվների՝ ցանկանալով նրա մահը:

# ՄԵԾ ՊՈԵՏԸ

1841 թվականի հունվարին Լերմոնտովը արձակուրդ է վերցնում, վերադառնում Պետերբուրգ և այնտեղ անցկացնում մի քանի ամիս: Արձակուրդը լրանալուց հետո նրա ընկերները տարկետում են վերցնում նրա համար և խոստանում ազատել զինվորական ծառայությունից: Դա բանաստեղծի կյանքի ամենաերջանիկ շրջանն էր: Նա ուրախ էր, որ վերջապես հաջողվելու է ընդմիշտ հանել զինվորական շորերը և ամբողջովին նվիրվել պոեզիային: Իմանալով, որ Լերմոնտովը Պետերբուրգում է, թագավորը հրամայում է 48 ժամվա ընթացքում թողնել մայրաքաղաքը: Մայիս ամսին նա վերջին հրաժեշտ է տալիս Պետերբուրգին: Դիմելով ցարական Ռուսիային, նա ասում է.

Գուցե Կովկասյան լեռներում ես
Թաքնվեմ դաժան քո ցարերից,
Նրանց աչքերից ամենատես,
Ամեն ինչ լսող ականջներից:

Սակայն նրան չհաջողվեց ազատվել հետապնդումից. նա ընկավ ցարական մի սպայի ձեռքով:

Ռուս հանճարեղ բանաստեղծ Միխայիլ Յուրևիչ Լերմոնտովը պատկանում է այն հազվադեպ գրողների թվին, որոնց բանաստեղծությունները անընդհատ հմայում են ընթերցողին իրենց գեղեցկությամբ, հուզականությամբ ու երաժշտականությամբ: Նրա պոեզիան գեղարվեստական կատարման տեսակետից այնքան բարձր է, որ հպանում է արվեստի նորմա դառնալու կատարելության:

Լերմոնտովը գրել է սկսել 1828 թվականից, երբ 14 տարեկան պատանի էր, և մինչև 1832 թվականը գրել էր մոտ երեք հարյուր ոտանավոր, 15 պոեմ, երեք պիես և մեկ պատմվածք: Նրա առաջին տպագրված գործը, որ գրել է 1833—34 թ. թ., «Հաջի Աբրեկ» պոեմն է, որը լույս է տեսել առանց բանաստեղծի գիտության: Ընկերները, նրանից գաղտնի, պոեմը տանում են խմբագրություն, որը և շուտով լույս է տեսնում: Լերմոնտովը գրել է բազմաթիվ պիեսներ, բայց ոչ մեկը լույս չի տեսել նրա կենդանության օրով: Սակայն «Դիմակահանդեսը» այսօր զարդարում է մեր թատրոնների խաղացանկը: Պոեմներից ամենանշանավորներն են «Կովկասի գերին», «Մծիրին», «Դևը», «Փախստականը»:

Լերմոնտովը քիչ ապրեց. ընդամենը 27 տարի, սակայն այդ կարճ ժամանակամիջոցում ստեղծեց այնպիսի անմահ գործեր, որոնք կանցնեն սերնդից սերունդ:

Լրացավ ռուս մեծ գրող Մ. Յու. Լերմոնտովի ծննդյան 150 տարին:

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Մ. ՅՈՒ. ԼԵՐՄՈՆՏՈՎ

## ԱՌԱԳԱՍՏ

Միգով պատած ծովի վրա կապուտակ
Առագաստն է անա լողում մեն-մենակ...
Ի՞նչ է փնտրում նա այն հեռու վայրերում,
Ի՞նչ է թողել նա հայրենի աշխարհում:

Եվ խաղում են ալիքները հողմահար,
Կայմն է թեքվում ու ճռնչում անդադար...
Բայց, նա, ավա՜ղ, ո՛չ բախտի է մանն գալիս,
Ո՛չ էլ բախտից երես դարձնում, խույս տալիս:

Նրա վերև՝ ոսկեճաճանչ արեգակ,
Նրա ներքև՝ ջրեր լազուր ու հըստակ.
Բայց նա խըռով՝ փոթորիկ է փափագում,
Կարծես հանգիստ պահված լինի փոթորկում:

Թարգմ. ԱԼ. ԾԱՏՈՒՐՅԱՆԻ

## ՄԾԻՐԻ

(Հատված պոեմից)

Մանուկ ժամանակ, քո մի՞տն է գալիս,
Ես չըգիտեի երբեք արտասվել,
Բայց այնտեղ չէի ամաչում լալիս:
Ո՞վ էր տեսնելու.—մըթին ծմակը,
Մին էլ երկնքում սահող լուսնյակը:
Լուսավորված նըրա լուսով,
Ծածկված մամռով ու ավազով,
Խիտ ծըմակով շրջափակված՝
Բացատն էր իմ առջև ընկած:
Հանկարծ այնտեղ անցավ մի ստվեր,
Ու հըրեղեն երկու կայծեր
Պըսպղացին... ապա թե այն
Մութ թավուտից ինչ-որ գազան
Մի ոստյունով թռավ, պառկեց,
Ավազի հետ խաղալ սկսեց:
Այն անապատի մշտական տերը
Հուժկու հովազն էր: Հում-հում ոսկորը
Կրծոտում էր նա, ուրախ մըռմռում,
Երբեմն արյունոտ հայացքը հառում
Ու փաղաքշաբար պոչը շարժելով՝
Նայում լրացած լուսնյակի վրան,
Ու փայլում էր մազն արծաթի նման:
Սպասում էի ես մի ճյուղ բռնած՝
Կռվի վայրկյանին, ու սիրտս հանկարծ
Բորբոքվեց արյան, կռվի ծարավով...
Հա՜, բոլորովին այլ ճանապարհով,
Այլ շավիղով էր ինձ բախտը տանում,
Բայց համոզված եմ, որ մեր աշխարքում
Ես էլ կլինեի քաջերի շարքում:

Թարգմ. ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆԻ



# Կանչի շախմատային ԴՊՐՈՑ

## Դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

### ՆՅՈՒԹԱԿԱՆ ԱՌԱՎԵԼՈՒԹՅԱՆ ՀԱՍՆԵԼՈՒ ՊԱՅՔԱՐԻ ՄԻՋՈՑՆԵՐԸ

Ծախմատային պարտիայում հակառակորդի արքային անմիջական հարված հասցնելու հնարավորություն միշտ չի հաջողվում ստանալ: Յուրաքանչյուր հակառակորդ, իհարկե, մեծ խնամքով հսկում է իր արքային: Սակայն ի՞նչ անել: Պետք է ձգտել նաև նյութական կամ դիրքային գերակշռության: Կարելի է, իհարկե, պարզամտորեն հարձակվել հակառակորդի ուժեղ ֆիգուրի վրա, հուսալով, որ մրցակիցը չի նկատի այդ սպառնալիքը: Սակայն նման խաղը շատ թե քիչ փորձված շախմատիստի անհաջողության կմատնի: Ավելի վտանգավոր է այնպիսի խաղը, երբ խաղացողը մի քայլով կարող է ստեղծել մի քանի սպառնալիք: Օրինակ՝ սպիտակներ— զզ e3, f3, g2, սևեր — Փd5, Զf5 դիրքում, սպիտակները 1. g4 քայլով ոչինչ չեն շահի, որովհետև սև ձին պարզապես կնահանջի կամ կըվերցնի e3 զինվորը: Սակայն եթե սպիտակները խաղան 1e4 , ապա նրանք միաժամանակ երկու ֆիգուրի վրա կհարձակվեն, որոնցից մեկը կոչնչանա: Այստեղ պարզորոշ կերպով երևում է սովորական և կրկնակի հարձակման տարբերությունը:

Խաղի ժամանակ հատկապես ուշադիր պետք է հետևել, որպեսզի ֆիգուրները դասավորված լինեն այնպես, որ կարողանան գրոհել վճռական կերպով:



Սևերը սպիտակ արքային գրոհում էին անզգուշաբար: Ընդհատելով թագուհու գործողությունը 1.Փb2 քայլով, սպիտակները ոչ-ոքիի են հասնում:



Ահա շախմատային կոմբինացիայի ոչ բարդ օրինակ: Սպիտակները խաղում են 1.Ն : g7+ +թ : g7 2.Նa7+ և արքայի նահանջից հետո վերցնում են թագուհին:



Այստեղ ուժերը գրեթե հավասար են: Սակայն քայլը սպիտակներինն է, և նրանք խաղում են 1. թb8+ ու հաջորդ Թa7+ քայլով շահում նավակը:



Այս դրությամբ սև ձիու շարժունակությունը սահմանափակված է, որովհետև ծածկում է թագուհուն: Բայց իր քայլի դեպքում գնում է e4 և հայտարարում շախ: Առկա է հարձակումը ավելի ուժեղ ֆիգուրի վրա, մի բան, որը պայքարի կարևորագույն ձևերից մեկն է: Սպիտակները ստիպված են խաղալ արքան, և սևերը վերցնում են g5



փիղը, վերականգնելով նյութական հավասարությունը:

Թվում է, թե այստեղ ուժերի բացահայտ գերակշռությունը սևերի կողմն է: Սակայն քայլի հերթը սպիտակներինն է:

1. Ն:d7+Աg8 2. Նg7+ Աh8 3.Ն:c7+Աg8 4. Նg7+ Աh8 5.Ն:b7+ և այլն:

Սպիտակները վերցնում են յոթերորդ հորիզոնականի բոլոր սև զինվորները, ապա նորից կրկնում մանևրը և վերցնում a8 նավակը, հասնելով նյութական գերակշռության:

Նման կոմբինացիան «ջրաղաց» է կոչվում: Իրոք, սպիտակ նավակը փղի օգնությամբ կարծես թե «աղաց» ամբողջ յոթերորդ շարքը:

Այժմ քննարկենք ավելի բարդ դեպք:

Տվյալ դիրքում քայլը սպի-



տակներինն է: Նրանք, իհարկե, խաղը կարող են շարունակել տարբեր եղանակներով: Մասնավորապես կարելի է փոխատեղություն կատարել, որը ինքնին օգտակար է:

Բայց շախմատում միշտ պետք է ձգտել անելու ոչ թե պարզապես լավ քայլ, այլ առավել նպատակահարմարը տվյալ դիրքում: Սպիտակները կարող են հասցնել «շշմեցուցիչ» հարված: 1. Զ:e5! Սևերը տխուր ընտրության առաջ են կանգնած. եթե վերցնեն ձին, ապա սպիտակները կխաղան Թ:h5 և մեկ ավելի զինվոր կունենան: Սակայն, այդ ի՞նչ է, սպիտակները անտեսեցին թագուհու կորու՞ստը: Ծու՛տ, խաղա՛նք Փ:d1: Մի՛ շտապեք ուրախանալ: Սպիտակները ճիշտ են հաշվել ամբողջ տարբերակը: Եվ այսպես. 1. Զ: e5! Փd1? 2. Փ: f7+Աe7 3. Զd5×! Ահա թե ինչ է նշանակում կոնկրետ մոտենալ դիրքին: Սպիտակները զոհաբերեցին թագուհին և օգտագործելով դիրքի առանձնահատկությունները, հայտարարեցին գեղեցիկ մատ:

Ուժեղ շախմատիստները իրենց հիշողության մեջ պահում են նման շատ և շատ կոմբինացիաներ: Դրանք նման են բազմապատկման աղյուսակին:

Խաղի ժամանակ, երբ պարտիան ընթանում է ժամանակի սահմանափակմամբ, նման կոմբինացիաներ իմացող շախմատիստը կարողանում է հեշտությամբ կողմնորոշվել ամենաբարդ իրադրության մեջ: Այդպիսի կոմբինացիաները կոչվում են տիպիկ կոմբինացիաներ: Պետք է կարդալ շախմատային գրքեր և հանդեսներ, գտնել և հիշել հաճախ հանդիպող դիրքեր ու կոմբինացիաներ, պարզերից մինչև ամենաբարդերը. սա յուրաքանչյուր շախմատիստի ինքնակատարելագործման եղանակներից մեկն է:

Տ. Պետրոսյան

## ԻՌԼԱՆԴԻԱՅԻ ԳԵՐԲԸ

*Երևի բոլորդ էլ տեսել եք, որ Իռլանդիայի գերբի վրա նկարված է մի կարմիր ձեռք: Իսկ գիտե՞ք դրա պատմությունը:*

*Երբ հազար տարի առաջ, վիկինգների երկու առաջնորդներ իրենց մարդկանցով նավարկում էին դեպի Իռլանդիա: Նրանցից մեկը, որի անունը Հիրմոն Օ Նիլ էր, ասաց, որ Իռլանդիայի թագավոր կդառնա իրենցից նա, որի ձեռքը առաջինը դիպչի իռլանդական հողին:*

*Վերջապես նրանք մոտեցան ծովեզերքին: Հիրմոն Օ Նիլի նավը մի փոքր ետ էր մյուսից: Երբ նավերն արդեն բոլորովին մոտ էին ցամաքին, Օ Նիլը կտրեց իր ձեռքը, նետեց դեպի ցամաք: Նրա ձեռքը առաջինը դիպավ իռլանդական հողին, և նա դարձավ Իռլանդիայի թագավորը: Այսպես է պատմում ավանդությունը:*

*Ահա թե ինչու Իռլանդիայի գերբի վրա ձեռք կա նկարված:*

# ԻՆՍԲՐՈՒԿԻՑ ՄԻՆՉԵՎ ՏՈԿԻՈ

Այս տարվա հունվարի վերջերին էր: Արծաթաթև հրթիռով «ՏՈՒ—124» ինքնաթիռը տաս հազար մետր բարձրության վրա, կտրելով օդային հարյուրավոր կիլոմետրեր, մեզ՝ մի խումբ ժուռնալիստների, հասցրեց Ավստրիայի մայրաքաղաքը: Իսկ երեկոյան մենք արդեն Ինսբրուկում էինք՝ ձմեռային օլիմպիական խաղերի քաղաքում: Երկրագնդի բոլոր ծայրերից Ինսբրուկ էին ժամանել ձմեռային սպորտի ուժեղագույն վարպետները, ինչպես նաև տասնյակ հազարավոր սպորտասեր տուրիստներ, բազմաթիվ հյուրեր, կինոաստղեր: Ավստրիական այդ հարյուր հազարանոց քաղաքի բնակչության թիվը օլիմպիական խաղերի բացման նախօրյակին գրեթե կրկնապատկվեց:

Հունվարի 29-ին Իզել լեռան վրա հանդիսավոր արարողությունից հետո վառվեց ավանդական կրակը, և սկսվեցին 9-րդ ձմեռային օլիմպիական խաղերը:

Սակայն մինչ այդ մասին պատմելը, եկեք թռուցիկ մի հայացք նետենք օլիմպիական խաղերի պատմության վրա:

Օլիմպիական խաղերն իրենց արմատներով գնում են դեպի դարերի խորքը: Ինչպես հայտնի է, 776 թվականին (մ. թ. ա.) հունական Օլիմպ քաղաքի մոտակայքում տեղի է ունեցել մեզ հայտնի առաջին սպորտային օլիմպիադան, որն իրենից ներկայացնում էր սպորտային մեծ տոն: Այդ ժամանակներից սկսած, բացառությամբ որոշ ընդմիջումների, օլիմպիական խաղերը շարունակվել են տասնյակ դարերի ընթացքում և հասել մեր օրերը:

1896 թվականից սկիզբ են առնում համաշխարհային օլիմպիական խաղերը՝ ներկայիս իմաստով. դրանք տեղի ունեցան Աթենքում: Անցած 68 տարիների ընթացքում ամառային օլիմպիական խաղերի թիվը կազմում է 17, սակայն իրականում եղել է 14 օլիմպիադա: Դա բացատրվում է նրանով, որ 1916, 1940 ու 1944 թվականները պատերազմի տարիներ էին, և 6-րդ, 12-րդ ու 13-րդ օլիմպիական խաղերը տեղի չունեցան: Սակայն այդ չկայացած օլիմպիադաների համարներն ընդունված է հաշվի առնել: Բացի ամառային սպորտային օլիմպիադաներից, տեղի են ունենում նաև ձմեռային օլիմպիական խաղեր, որոնք շատ ավելի ուշ են սկսել իրենց պատմությունը, 1924 թվականից: Պատճառն այն է, որ երկար տարիներ ձմեռային խաղերի վերաբերյալ բոլոր առաջարկությունները հանդիպում էին Սկանդինավյան երկրների դիմադրությանը, որոնք այդ ժամանակ անց էին կացնում այսպես կոչված Հյուսիսային խաղեր և գտնում էին, որ ձմեռային նոր խաղերի կարիք չկա: Այնուամենայնիվ այդ դիմադրությունը հաղթահարվեց:

TOKYO 1964



Ինսբրուկ, 1964 թ. հունվար

Անցած քառասուն տարիների ընթացքում տեղի են ունեցել ինը ձմեռային օլիմպիական խաղեր, այդ թվում նաև այս տարվա հունվար-փետրվար ամիսներին Ինսբրուկ քաղաքում կայացած խաղերը:

Սովետական սպորտսմենները օլիմպիական խաղերին սկսեցին մասնակցել միայն ետպատերազմյան տարիներին: Առաջին անգամ մասնակցեցին Հելսինկիում կայացած 15-րդ օլիմպիական սպորտային խաղերին (1952 թ.) և մեծ հաջողության հասնելով՝ ամերիկյան սպորտսմենների հետ միասին բաժանեցին առաջին և երկրորդ տեղերը: Իսկ հետագայում արդեն Մելբուռնում (1956 թ.), Հռոմում (1960 թ.) սովետական սպորտսմենները ամրապնդեցին և զարգացրին Հելսինկիի հաջողությունները: Նրանք միավորների զգալի քանակով առաջ անցան նույնիսկ ամերիկյան սպորտսմեններից:

Իսկ ձմեռային օլիմպիական խաղերին մեր սպորտսմեններն սկսեցին մասնակցել ավելի ուշ՝ 1956 թվականին: Ինչպես այդ տարի, այնպես էլ հաջորդ՝ 8-րդ ձմեռային խաղերի ժամանակ սովետական սպորտսմենները հաղթող դուրս եկան՝ գրավելով ընդհանուր թիմային առաջին տեղը:

## 11 ՈՍԿԵ, 8 ԱՐԾԱԹԵ, 6 ԲՐՈՆԶԵ ՄԵԴԱԼՆԵՐ

Այսպիսի հարուստ սպորտային «ավարով» վերադարձան մեր սպորտսմենները 9-րդ ձմեռային օլիմպիական խաղերից՝ Ինսբրուկից:



Լուսանկարը՝ հեղինակի

Օլիմպիադայի հենց առաջին օրը պսակվեց սովետական ճնային չմշկորդների փայլուն հաղթանակով՝ Լյուդմիլա Բելոուսովան և Օլեգ Պրոտոպոպովը նվաճեցին առաջին ոսկե մեդալը: Նրանք հաղթող դուրս եկան մի մրցությունում, որին մասնակցում էին Գերմանիայի միացյալ թիմի անդամներ, աշխարհի և Եվրոպայի չեմպիոններ Մարիկա Կիլիուսը և Հանս-Յուրգեն Բոյմլերը, որոնք համարվում էին անմրցակից չմշկորդներ:

Օլիմպիական խաղերի բացման հաջորդ օրը մրցության մեջ մտան լեռնային դահուկավորները, հոկեյիստները: Շուտով Ինսբրուկում սկսվեցին «Սկոբլիկովյան» օրերը: Դա իրոք Սվերդլովսկի 24-ամյա ուսուցչուհի Լիդիա Սկոբլիկովայի մեծ հաղթահանդեսն էր: Նա սառցուղիների վրա նվաճեց չորս ոսկե մեդալ: Օլիմպիական խաղերի պատմության մեջ սա իր նմանը չունեցող մի երևույթ էր: Ամենուրեք, ուր հայտնվում էր Լիդիան, նրան շրջապատում էին, խնդրում ինքնագիրը: Իսկ մի շարք թերթեր նրան ուղղակի անվանեցին «Սառցային ուղիների թագուհի»:

Օլիմպիական մեդալների արժանացած մեր բոլոր սպորտսմենների մասին անհնար է պատմել մի փոքրիկ հոդվածում: Սակայն հոկեյիստների թիմի մասին չեմ կարող մի քանի խոսք չասել:

Ընդամենը տասը տարի առաջ մեր երկրում առաջին անգամ սկսեցին տափօղակով հոկեյ խաղալ, մինչդեռ այն լայնորեն տարածված էր եվրոպական շատ երկրներում և Ամերիկայի Միացյալ Նահանգներում ու Կանադայում: Այդ երկրների հոկեյիստները ունեն տասնամյակների հարուստ փորձ: Եվ ահա կարճ ժամանակամիջոցում մեր հոկեյիստները կարողացան հասնել այնպիսի արդյունքների, որ մասնագետները մնացին զարմացած: Հոկեյի տուրնիրի վերջին օրը հանդիպեցին Սովետական Միության և Կանադայի հոկեյիստները: Ձտեսնված լարված ու համառ պայքարում 2:1 հաշվով հաղթանակ նվաճեցին մեր հոկեյիստները, որոնք պարգևատրվեցին օլիմպիական խաղերի, աշխարհի ու Եվրոպայի չեմպիոնների ոսկե մեդալներով:

Մեր սպորտսմենները Ինսբրուկից վերադարձան, իրենց հետ բերելով ոսկե, արծաթե և բրոնզե 25 մեդալ: Դա մեր սովետական սպորտի նոր հաղթահանդեսն էր:

## ԱՌՋԵՎՈՒՄ ՏՈԿԻՈՆ Է

Այս օրերին, երբ ձեզ կհասնի ամսագրի հոկտեմբերի համարը, Տոկիոյում արդեն սկսվել են համաշխարհային 18-րդ ամառային օլիմպիական խաղերը, որին մասնակցում են 90 երկրների ավելի քան ութ հազար ուժեղագույն սպորտսմեններ:

Սովետական Միության ուժեղագույն սպորտսմենները՝ թեթև ատլետները, հնգամարտիկները, լողորդները, վոլեյբոլի, բասկետբոլի, ջրագնդակի վարպետները, հեծանվորդները, սուսերամարտիկները, ըմբիշները, բռնցքամարտիկները, ծանր ատլետները, մարմնամարզիկները, թիավարները մրցության են դուրս եկել հանուն օլիմպիական մեդալների:

Ինչպե՞ս կավարտվեն այդ մրցումները: Մեր սպորտսմեններին կհաջողվի՞ կրկնել նախորդ օլիմպիական խաղերի արդյունքները, դժվար է գուշակել:

Թող հաղթանակի ուժեղագույնը:

Հուսանք, որ այդ ուժեղագույններն այս անգամ էլ կլինեն մեր սպորտսմենները, որոնք բարձր կպահեն սովետական սպորտի պանծալի դրոշը:

ԱԼԲԵՐՏ ԳԱՍՊԱՐՅԱՆ





## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԷԴՎԱՐԴ ԶԱՔԱՐՅԱՆԻ*

# ԻՍԿ ԴՈ՞Ւ...

Պատանի ընթերցող, վաղուց արդեն սկսվել է 1965 թվականի թերթերի և ամսագրերի բաժանորդագրությունը։ Ամենուրեք նորից եռուզեռ է, յուրաքանչյուրն ընտրում է իր տարիքին ու նախասիրություններին համապատասխան թերթ ու ամսագիր։

«Պիոները» դպրոցականների համար լույս տեսնող միակ պատկերազարդ ամսագիրն է Հայաստանում, և բոլոր երեխաները պետք է ստանան ու կարդան իրենց ամսագիրը։

Մեր ընթերցողներից շատերը խմբագրություն ուղարկած նամակներում, հայտնելով իրենց կարծիքը 1964 թ. լույս ընծայված համարների վերաբերյալ, միաժամանակ գրում են, որ 1965 թվականին նույնպես ուզում են ստանալ մեր ամսագիրը։

## ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

**«ՊԻՈՆԵՐ» ամսագրի 1965 թվականի**

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Իսկ դո՞ւ...

Եթե ուզում ես ստանալ «Պիոների» 1965 թվականի բոլոր համարները, այդ մասին հայտնիր ծնողներիդ, խնդրիր 2 ռուբլի 40 կոպեկ և դիմիր ավագ ջոկատավարին։ Ամսագրին կարող ես բաժանորդագրվել նաև 6 ամսով, իսկ հետագայում կբաժանորդագրվես երկրորդ կիսամյակի համար։ 6 ամսվա արժեքն է 1 ռ. 20 կ.։

Շտապի՛ր, քանի դեռ բաժանորդագրությունը չի ավարտված։ Նույնը խորհուրդ տուր ընկերներիդ։


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։*

*ՎՖ 07855։ Պատվեր՝ 1580։ Տպաքանակ՝ 13 500։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 2/X 1964 թ.։ ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91։* Գինը 20 կ.



# ԼՈՒԻ ԼՅՈՒՄԵՐ

Դուք, որ հիմա ձեր տանը նստած հեռուստացույցով կինոնկար եք նայում կամ երբ կինոթատրոն եք գնում և էկրանի վրա տեսնում քայլող ու խոսող մարդկանց, սլացող ավտոմեքենաներ ու գնացքներ, ծփացող ջրեր ու քամուց օրորվող ծառեր, ձեր մտքով նույնիսկ չի անցնում, որ նման առօրյա ու սովորական թվացող բաները ժամանակին զարմանք և, նույնիսկ, սարսափ են պատճառել մարդկանց։

Երբ 1895 թվականի մարտի 22-ին Փարիզի նկուղներից մեկում ցույց տրվեց աշխարհում առաջին շարժանկարը, ոմանք սրահից սարսափահար դուրս փախան. և ինչպե՞ս չփախչեին, երբ էկրանի վրայի նկարն սկսեց շարժվել, մարդիկ սկսեցին արագ-արագ քայլել և այնպես էր թվում, թե նրանք ահա կմտնեն սրահ։ Դա մի պարզ շարժանկար էր, որը ցույց էր տալիս գործարանից դուրս եկող մարդկանց և տևում էր ընդամենը մի քանի րոպե, բայց այդ էլ բավական էր, որ մարդիկ զարմանքից քար կտրեին։ Ճիշտ է, դիտողները նախօրոք գիտեին, որ շարժվող նկարներ են ցույց տալու, այդ մասին նրանք կարդացել էին հայտագրերում, բայց թերահավատությամբ էին վերաբերվել դրան, չէին հավատացել։ Դե, այն ժամանակ Փարիզում ինչե՞ր ասես, որ չէին կատարվում և ինչե՞ր չէին գրում թերթերում։ Փող վաստակելու տենդով բռնված մարդիկ ամեն տեսակի ճարպկության դիմում էին և ահա փարիզցիները կարծում էին, թե այս շարժվող նկարների մասին եղած հայտարարություններն էլ միամիտներին գրավելու համար հնարված բան է։ Բայց ահա նրանք իրենց աչքերով են տեսնում այդ շարժանկարը, որը ցույց է տալիս ոչ թե ձեռքով նկարված, այլ իսկական մարդկանց, որոնք խոսում են, քայլում, ծիծաղում։ Ճիշտ է, նրանց ձայները չէին լսվում, բայց շարժվում էին շրթունքները, փայփլում աչքերը։

Այսպես ծնվեց կինեմատոգրաֆը՝ «Մեծ համրը», ինչպես հետագայում սկսեցին անվանել այն և սկիզբ դրվեց աշխարհում ամենամասսայական արվեստին, առանց որի այժմ կյանքը դժվար է պատկերացնել։

Սա մի հայտնագործություն էր, որն իր նշանակությամբ հավասար էր առաջին շոգեմեքենայի, էլեկտրականության ու ռադիոյի հայտնագործություններին, սակայն նրա ստեղծողի անունը դեռևս շատերը չգիտեն։ Սա, անշուշտ, անարդար բան է, երեխաներ։ Ջեյմս Ուայտի, Դիզելի, Պոպովի և Էդիսոնի անունների հետ, դուք պետք է իմանաք նաև Լուի Լյումերի անունը և պետք է իմանաք նրա մասին։ Չէ՞ որ հենց Լյումերը հայտնագործեց կինոն ու նա էլ հենց Փարիզում առաջին անգամ ցուցադրեց աշխարհում առաջին շարժանկարները։

Լուի Լյումերը ծնվել է 1864 թվականի հոկտեմբերի 5-ին Բեզանսոն փոքրիկ քաղաքում, ուր նրա հայրը լուսանկարչական արհեստանոց ուներ։ Հետագայում նրանց ընտանիքը տեղափոխվեց Լիոն, ուր փոքրիկ լուսանկարչական արհեստանոցին փոխարինեց ֆոտոքիմիական նյութերի ֆաբրիկան։ Լուին քիմիայով սկսեց հետաքրքրվել շատ վաղ հասակում և 1880 թվականին նա դպրոցն ավարտեց, ստանալով ամենաբարձր պարգևը։ Դպրոցն ավարտելուց հետո նրա համար արդեն պարզ էր իր կյանքի ուղին։ Նա հասկացավ, որ ուրիշ ճանապարհ չունի գիտությունից բացի։ Նախ նա իր համար սկսեց պարզել այն բոլոր գաղտնիքները, որոնք նրան դեռ մանուկ հասակում հանելուկ էին թվում։ Չէ՞ որ 5—6 տարեկան Լուին տեսել էր, թե ինչպես է իր հայրը սպիտակ թղթի կտորը մտցնում ինչ-որ լուծույթի մեջ և թե ինչպես է թղթի վրա կամաց-կամաց հայտնվում մարդու դեմքը։ Նա սկսեց հետաքրքրվել այդ լուծույթներով ու հայտնաբերեց դրանց ավելի ուժեղ տեսակները։ Այնուհետև սկսեց զբաղվել ֆոտոապարատով։ Ահա այստեղ էլ նրա մեջ շարժանկար ստեղծելու միտք առաջացավ։ Առաջին շարժանկարը ստեղծելուց հետո, նա



իրար հետևից նորանոր գյուտեր արեց։ Ո՞վ առաջին գունավոր նկարն ստացավ՝ Լուի Լյումերը, ո՞վ առաջին անգամ ստեղծեց այժմյան լայնէկրանի, կինոպանորամայի և ցիրկորամայի նախատիպը հանդիսացող «ֆոտորամա»՝ Լուի Լյումերը։

Մինչև այսօր էլ դեռ աշխարհի տարբեր մասերում գիտնականները կատարելագործում են Լուի Լյումերի հայտնագործությունները և մարդիկ չեն մոռացել նրան։ Բայց Լյումերն իր մեծ գյուտի համար արժանի է, որ բոլորը ճանաչեն, գիտենան նրան։

Այս տարի ամբողջ աշխարհը տոնում է մեծ ֆրանսիացու ծննդյան հարյուրամյակը։

20 կ.

Ինդեքս 77806

Բարձր են հայոց սարերն ու զով,
Ծաղկաշատ են ու բուրավետ,
Նրանք պայծառ մի հրազով
Ձրուցում են երկնքի հետ։
Ճանապարհներ ունեն քարոտ,
Կեռ ու ոլոր ճանապարհներ,



Դու «Վոլգայով» չես գնա մոտ,
Չես բարձրանա սայլով դու վեր,
Մեքենայով քո փառահեղ
Հյուր չես գնա սարվոր նանին,
Քեզ կարող է տանել այնտեղ
Միայն խելոք այս կենդանին։
Բարձրանում է լանջով կանաչ,
Կտրում սովոր ճամփան նա իր,
Հովիվներին տանում է հաց,
Սարից բերում յուղ ու պանիր։
Սար է գնում, գյուղ է գալիս,
Աշխատում է ամբողջ տարին,
Իր շչակով ձայն է տալիս
Մթին ձորից հեռու սարին,
Սարի վերջին բեռը թամբին՝
Ցած է իջնում այս իշուկը,
Օրորվում է նրա ճամփին
Մեր անտառի զովն ու շուքը։

Ս. ԽԱՐԱԶՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ